# ՄԱՅԻՍ

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Նորից գարուն բազմամարդ,
Զարթնող կյանքի ճիչ ու կանչ,
Նորից շուշան, նորից վարդ,
Վարար առվի ժիր կարկաչ...

Ջինջ երկնքում կապուտակ
Մանուկ արևն է շողում,
Սարյակ, ծիծեռ համարձակ
Թևածում են, ճախրում:

Ուրախության այս պահին
Ո՞վ է, ո՞վ է եկել հյուր.
Ամիսների թագուհին՝
Վառ մայիսը ոսկեհուր:

Ծիլ ու ծաղկո՛վ է եկել,
Երգ ու կյանքո՛վ է եկել.
Գյուղ ու քաղաք, սար ու ձոր
Կանաչ-կարմիր է ներկել:

Մայիս, չքնաղ քո դեմքին
Ինչ վառ ժպի՜տ է խաղում,
Ինչ ուրա՛խ է քո հոգին,
Դու ինչ լա՜վ ես ծիծաղում:

Ուզում եմ ես սիրտս բաց,
Քո վառ տեսքով հիացած,
Ճչալ, կանչել ու երգել՝
Մայիս, բարո՛վ ես եկել...

Նորից գարուն, ծիլ ու արտ,
Օրեր նախշուն ու պայծառ,
Լայն փողոցներ բազմամարդ
Ու դրոշներ արնավառ:

ՀԼԿԵՄ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՄԱՆԿԱԿԱՆ
ԱՄՍԱԳԻՐ



№ 5 1957 թ.
ՄԱՅԻՍ
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
29-ՐԴ ՏԱՐԻ



## ՑՆԾՈՒԹՅԱՆ ՕՐԵՐ

Մայիսի 25-ն է:

Անճանաչելի է դարձել հարազատ Երևանը: Հազարավոր դրոշակներ են ծածանվում փողոցներում ու հրապարակներում, շենքերը նոր տեսք են ստացել. ամենուր զորգեր ու ծաղկեշղթաներ են կախված, պատերը, կամարներն ու կտուրները երիզված են գույնըզգույն լապտերների լուսաշարերով:

Ահա Լենինի, Շահումյանի, Պետական օպերայի հրապարակները, որոնք ավելի հանդիսավոր տեսք են ստացել, ավելի գեղեցկացել: Ահա Ամիրյան փողոցը: Ասֆալտն այստեղ ասես թե չքացել է, ամբողջ փողոցով մեկ ձգվում է մի գեղանկար զորգ, որ նկարիչները նկարել են հենց ասֆալտի վրա:

Բոլորովին այլ տեսք են ստացել մայրաքաղաքի գրոսայգիները, իսկ ռեսպուբլիկական ստադիոնն անճանաչելի է դարձել: Ահա լեփ-լեցուն տրիբունաները թնդում են ցնծության ու հրճվանքի ձայներից: Լայն շարքերով ստադիոն են մտնում ռեսպուբլիկայի երիտասարդության ներկայացուցիչները՝ Հայաստանի երիտասարդական առաջին ֆեստիվալի մասնակիցները:

Ժամը ուղիղ 4 անց 40 րոպե է: Ստադիոն են մտնում 25 սպորտսմեններ, որոնք վառում են ֆեստիվալի մեծ ջահը: Եվ երբ բոցավառվում է ֆեստիվալային ջահը, լսվում է գնացքի երկարատև մի սուլոց, որին ձայնակցում են ավտոմեքենաների ազդանշանները: Երկինք են բարձրանում հազարավոր ճերմակ աղավնիներ, ինքնաթիռները գույնզգույն թերթիկներ են թափում ստադիոնի վրա, երկու հազար հոգուց բաղկացած երգեցիկ խումբը, ամբողջ ստադիոնի ձայնակցությամբ կատարում է Երիտասարդության հիմնը:

Սկսվում է ֆեստիվալը, Հայաստանի երիտասարդության սքանչելի տոնը, որին մասնակցում են նաև պիոներներն ու դպրոցականները:

Ժամը 6 անց 10 րոպեին Արևելյան տրիբունայի կամարի տակից դուրս են վազում քսան շեփորահար ու թմբկահար պիոներներ և «հավաք» նվագում: Բոլոր տրիբունաներից դեպի ֆուտբոլի խաղադաշտ են վազում հարյուրավոր պիոներներ և պիոներական վալսի հնչյունների տակ, գունավոր գնդակները ձեռքներին, վարժություններ կատարում: Նրանք իրենց ճկուն շարժումներով հիացմունք են պատճառում բոլորին: Եվ ահա օդում երևում են ուղղաթիռները, երեխաները վերադառնում են իրենց նախկին տեղերը: Ուղղաթիռներից դուրս են գալիս պարողներն ու պարուհիները և կատարում «Վարդ» ու «Կարապներ» պարերը:

Այսպես ցնծությունը շարունակվում է մինչև երեկոյան ժամը 8-ը, իսկ հաջորդ օրը նորից վերսկսվում, բայց այս անգամ արդեն թատրոնների և ակումբների դահլիճներում:

Մայիսի 27-ի եզրափակիչ համերգով, որ տեղի է ունենում օպերայի և բալետի դահլիճում, ֆեստիվալը փակվում է:

Հարյուրավոր պատանիներ ու աղջիկներ իրավունք են ստանում մասնակցելու երիտասարդության համամիութենական և համաշխարհային ֆեստիվալներին, որ տեղի կունենան այս տարվա հուլիս-օգոստոս ամիսներին, մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում:

# Դպրոցական հանդես

Հ. ՂԱԶՈՅԱՆ

Նկարները՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

Երբ փողային նվագախումբը լռեց, բոլորի հայացքները ուղղվեցին դեպի բեմ։ Այնտեղ, կիսախավարում բոցկլտում էր վառ ջահը, լուսավորելով մի խումբ երեխաների։ Ահա առաջ եկավ նրանցից մեկը՝ Լյուդմիլան, ու զրնգուն ձայնով ողջունեց բոլորին՝ դպրոցական ֆեստիվալն սկսելու առթիվ։

Լյուդմիլան ողջունեց ռուսերեն, Լաերտը՝ հայերեն, Յուրիկն՝ ադրբեջաներեն, Ջուլիետան՝ վրացերեն, Ստելլան՝ անգլերեն...

Ու դահլիճում նստած բոլոր երեխաներն էլ հանույքով տարվեցին այն պատրանքով, թե բեմում կանգնած են ոչ թե իրենց դասընկերները, այլ տարբեր ազգերի զավակներ, անծանոթ բարեկամներ, որ հյուր են եկել նրանց այդ երեկո։

Բեմում երևաց պատանի ակորդեոնիստը ու բոլորի միահամուռ, սրտաբուխ երգը թնդաց դահլիճով մեկ։

Այսպես սկսեցին իրենց ֆեստիվալը Երևանի Աբովյանի անվան դպրոցի աշակերտները։

* * *

Երեք շաբաթ տևեց ֆեստիվալը։ Շատ բավականություն բերեցին երեխաներին այդ պայծառ, տոնական երեկոները։ Ինչքա՜ն շնորհալի աղջիկներ ու տղաներ այդ օրերին առաջին անգամ ելույթ ունեցան հարյուրավոր հանդիսականների առաջ։ Նրանք դպրոցի փոքրիկ բեմը բարձրացան վեհերոտ քայլերով ու անհամարձակ և հեռացան ծափերի տարափից շփոթված, բայց ուրախ հոգով ու արդեն վստահ իրենց ուժերին։

Երեխաները ոչինչ չխնայեցին, որ տոնական հանդեսում ամեն ինչ գեղեցիկ ու հրապուրիչ լինի։ Էսֆիրան, Նինան, Ջուլիետան, Ռաֆլետան, Սվետլանան՝ բոլորն իրար էին անցել։ Նրանք, իրար օգնելով, թափանցիկ կտավից գեղեցիկ հագուստներ կարեցին, հետո ներկեցին, արդուկեցին... Բայց արդյո՞ք ամեն բան արված էր, որ վարդերի պարը գեղեցիկ լինի։

— Դեռ չէ, — ասացին «Հմուտ ձեռքեր» խմբակի փոքրիկները։ — Սպասեցեք...

Ինչպե՜ս էին աշխատում նրանք։ 5-րդ դասարանցիներ՝ Մկրտիչ Եղիկյանի ու Մերուժան Պետրոսյանի փոքրիկ, հմուտ մատների մեջ գունավոր թղթերը գեղեցիկ ծաղկեպսակներ դարձան, որ երեկույթի ժամանակ զարդարեն պարուհիների գանգուրները։

## ԻՆՔՆԱՇԵՆ ԱՎՏՈՄԵՔԵՆԱ



Այս ավտոմեքենան դուք առաջին անգամն եք տեսնում։ Բայց չկարծեք, թե դա վերջերս է արտադրվել գործարանում։ Այս մարդատար փոքր ավտոմեքենան պատրաստել են Երևանի Տիմոշենկոյի անվան դպրոցի մի խումբ աշակերտներ, ավտոխմբակավար Ռուբիկ Շահբազյանի ղեկավարությամբ ու նրա կոնստրուկցիայով։ Բացի մոտորից և մի քանի այլ մասերից, մնացածը իրենք են պատրաստել դպրոցի արհեստանոցում։

Նրանք այսպես են դիմավորում Երիտասարդության համաշխարհային VI ֆեստիվալը։





Իսկ ինչո՞վ էին զբաղված այդ օրերին Վոլոդյա Գևորգյանն ու Էդիկ Մանուկյանը. նրանք, ովքեր դպրոցում շնորհալի նկարչի ու գծագրողի համբավ էին վաստակել:

Տղաները պատի թերթի տոնական համարն էին պատրաստում: Հիմա էլ դեռ կախված է այդ թերթը դպրոցի պիոներական սենյակում: Թերթի գեղեցիկ ճակատին բարձրանում է աշակերտների սիրելի դպրոցը, որն հպարտությամբ կրում է Աբովյանի անունը: Հեռվում նշմարվում է ձյունափառ Մասիսն իր զույգ գագաթներով:

... Ո՞վ է տեսել, որ մարդիկ տոնի և ուրախության օրերին չհիշեն իրենց մտերիմներին: Եվ այս երեխաներն էլ հիշեցին իրենց բարեկամներին:

Ո՞ւր ասես՝ նամակներ չուղարկեցին նրանք. Ղրիմ ու Վրաստան, Էստոնիա ու Լիտվա, Չեխոսլովակիա ու Բուլղարիա:

Հենց վերջերս Բաղրամյանի անվան ջոկատը մի նամակ ստացավ Ղրիմից:

«Մենք էլ ենք ֆեստիվալի պատրաստվում ու շատ ենք ուզում հայկական ազգային տարազներ ունենալ»,— գրել էին նրանք: Ու դեռ շաբաթը չլրացած՝ ջոկատը մի փոքրիկ ծանրոց ուղարկեց Ղրիմ: Ինչքա՜ն կուրախանան Ղրիմի երեխաները, երբ արկղիկը բացեն: Այնտեղ նրանք կգտնեն Հայաստանի գեղեցիկ վայրերը պատկերող լուսանկարներ, հայ պոետների մի քանի բանաստեղծություն ու իրենց ցանկացած ազգային տարազները, որ խնամքով կարել էին Սուսանն ու Համասփյուռը՝ մայրիկների օգնությամբ:

Իսկ ի՞նչ էին անում դպրոցի սպորտասեր երեխաները, նրանք, որ զբաղմունք են գտնում տարվա բոլոր եղանակներին:

— Ի՞նչ եք մտածում,— հարցրեցին երեխաներին ավագ ջոկատավարն ու ֆիզկուլտուրայի դասատուն:— Մտադիր եք մինչև գարուն փողոցո՞ւմ սահել:

— Եկեք, սահադաշտ պատրաստենք,— գլխի ընկան 5-րդ ջոկատի պիոներները: Ասացին ու իսկույն գործի անցան: Ռուբիկը, Էդիկը, Ազատը Ռազմիկը, Կոնստանդինը ու մյուս երեխաները դպրոցի բակը մաքրեցին ձյունից, հարթեցին կոխկրտեցին ու ջրեցին: Մի շաբաթ շարունակ նրանք ջրով ողողում էին սառցակալած դաշտը: Ու երբ ֆեստիվալն սկսվեց, սահադաշտն հայելու պես փայլփլում էր:

Ֆեստիվալի մի օրն հատկացվեց սպորտային մրցություններին:

Դրսում աշակերտների բազմությունն հավաքված՝ դիտում է վոլեյբոլիստների, բասկետբոլիստների մրցությունը: 9-րդ դասարանցիները հաղթանակով դուրս եկան մրցությունից:

Նույն ժամին, դպրոցի մի լուռ ու լուսավոր սենյակում իրենց խաղն էին սկսել պատանի շախմատիստները: Շաշկու ու շախմատի մրցումներում աչքի ընկան տղաներից՝ Թորգոմ Ավագյանն ու Պարգև Հայրապետյանը, աղջիկներից՝ Մանենա Վարդանյանը:

— Սո՛ւս. այստեղ դերասաններ են,— փսփսում էին իրար ականջի ամենափոքր աշակերտները, ծիկրակելով այն դռնից, ուր թատերական խմբակի անդամները ներկայացումից առաջ կարգի էին բերում բեմը:

Ֆեստիվալի օրերին խմբակը բեմադրեց Ս. Միխալկովի «Ակամա վերաքննիչները» և Նաիրի Զարյանի «Պատի թերթը»:

* * *

Ֆեստիվալի եզրափակիչ համերգն է: Բեմի վրա է բոլորովին փոքրիկ մի տղա՝ երրորդ դասարանցի Հայկազ Քոչարը: Նա արտասանում է սրտաբուխ, վարակիչ հուզմունքով «Ես իմ անուշ Հայաստանի» բանաստեղծությունը:

Հնչում է մի թռվիչ մեղեդի: Սահուն քայլերով բեմ են մտնում 5—7-րդ դասարանցի 20 աղջիկներ: Սպիտակ, վարդագույն ու ալ հագուստներով նրանք նորաբաց վարդի են նման: Սենյակն ասես լցվում է գարնան բուրմունքով, երբ վերսկսվում է վարդերի «Նազանի» պարը:

Ծափերից դահլիճը թնդում է, ետ կանչում նրանց, բայց քնքուշ վարդերը չքացել են արդեն՝ գեղեցիկ երազի նման...

Նրանց փոխարինում է մանդոլինիստների նորակազմ խմբակը:

Ծանոթ երաժշտությունը ողողում է դահլիճը, ասես բերելով իր հետ հայրենի կանաչ սարերի զովը: «Ա՜խ, ինչ լավ է սարի լանջին»,—կրկնվում է բոլորի հոգում:

Հետո նորից մի երգ հնչեց հարազատ կանչի պես, բայց այս անգամ՝ ուկրաինական: Վերջին



Իջևանի հայկական միջնակարգ դպրոցի ձեռագործի խմբակը ֆեստիվալի նախօրյակին:

շարքում նստած մի քնքուշ աղջիկ ժպտաց, ուղղվեց տեղում... Երգը թռցրեց, տարավ նրան հեռո՛ւ-հեռավոր, բայց հարազատ վայրեր, այնտեղ, ուր փռված են ուկրաինական տափաստանները ու անխռով հոսում է Դնեպրը:

Ռիմա Լիզագուբն էր...

Ուկրաինացի է Ռիմայի հայրը, իսկ մայրը հայուհի: Ռիման մեծացել է Հայաստանում:

Ու թեև նա երբեք չի տեսել Ուկրաինան, բայց մի՞թե քիչ բան են ասել նրան հայրիկի պատմածները ու անմահ Կոբզարը՝ Տարաս Շևչենկոն:

Պայծառ, կենսախինդ աղջիկ է Ռիման: Կիրակի երեկոները, երբ նրա մոտ հյուր են գալիս ընկերուհիները՝ Արծվիկն ու Անահիտը, նա սիրում է հագնել իր ուկրաինական սարաֆանը, որ ինքն է կարել և սկսում են երգն ու պարը: Ուկրաինական ու հայկական, ռուսական ու ուզբեկական և, էլ ի՞նչ պարեր ասես՝ չեն պարում աղջիկները: Եվ ահա Ռիման այստեղ, ֆեստիվալի բեմում, կատարում է իր սիրելի պարերից մեկը՝ Թարաքյամա:

Հետո, կայտառ ու ճարպիկ՝ պարում է Էդիկը, նվագում են Ֆելիքսն ու Վաչիկը, Լևոնը, Արմենն ու Մկրտիչը արտասանում են... Կլարնետի թախծոտ երգի տակ Մարիետան արտասանում է «Գյուլնարան»:

Հետո մի բարալիկ աղջիկ՝ Սվետլանա Հովհաննիսյանը, երգում է «Բարեկամություն» երգը: Դարավոր հարևանների՝ աշխատավոր հայի ու ադրբեջանցու երգն է այդ, եղբայրության երգը...

Համերգը մոտենում է ավարտին: Երեխաները, համակ լսողություն դարձած, նայում են Նինա Նահապետյանին:

«Արի, եղբայր, փառաբանենք մեր քաղցրաբառ
հայոց լեզուն,
Մեր սրտի հուր, մեր ծեռքի թուր, մեր հոգու լար
հայոց լեզուն»:

Ջերմ ու խանդավառ արտասանում է Նինան: Հնչում է նրա ձայնը քար լռության մեջ: Բոլոր ունկնդիրները՝ սկսած առաջին դասարանցուց, որը դեռ նոր է սովորել «այբն» ու «բենը», մինչև 10-րդ դասարանցին, հպարտությամբ են լսում նրան: Նրանք հպարտ են իրենց հարուստ ու գեղեցիկ մայրենի լեզվով, որը լուսավորում է իրենց ճամփան դեպի մյուս ժողովուրդների լեզուն ու կուլտուրան, դեպի ճշմարտությունը: Ու բոլորի մանուկ հոգում անմար լույսի պես ապրում է մեծ Աբովյանի պատգամը. «Տասը լեզու սովորեցեք, բայց ձեր լեզուն դայիմ բռնեցեք»:

## ԱՇՏԱՐԱԿԻ ՊԱՏԱՆԻ ՆԿԱՐԻՉՆԵՐԸ

*ՍԻԱՆՈՍ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

Գեղեցիկ է Աշտարակի բնությունը և այնքա՜ն շատ հրապույրներ ունի նա:

Գյուղի կողքով հոսում է Քասախը, որը կոհակ առ կոհակ զարնվելով քարերին ու ժայռերին, շտապում է ջրելու Արարատյան դաշտը:

Ճանաչել հայրենի երկիրը, կտավի վրա վերարտադրել Աշտարակի գեղատեսիլ բնությունը և պիոներական հետաքրքիր առօրյան, ահա թե ինչ է ցանկանում յուրաքանչյուր պատանի ինքնուս նկարիչ:

Աշտարակի Պիոներ տանը հաճախ ցուցադրվում են նրանց ստեղծագործությունները:

Արևշատ Ավագյանի «Աշունը Աշտարակում», «Փշատենիները», «Գյուղական բակը», «Մասիսները» նոր պեյզաժները կատարված են այնքան նուրբ, այնքան ջերմ, որ հիանալի տպավորություն են թողնում:

Պիոներ Ալֆրեդ Շահնազարյանի՝ «Աշտարակի կամուրջը», «Տեսարաններ Աշտարակից» գործերը, Վազգեն Մարտիրոսյանի մի շարք պեյզաժները, Ռազմիկ Ճուղուրյանի, Գագիկ Հովհաննիսյանի նատյուրմորտները և ուրիշների ստեղծագործությունները ցույց են տալիս պատանի նկարիչների հարուստ ներաշխարհը, նրանց անչափ սերը դեպի հայրենի բնությունը:

# Պատանիները՝ Ֆեստիվալին

Երևանի Ղուկաս Ղուկասյանի անվան Պիոներների պալատում գործում են նկարչական, գրական, քանդակագործական, երգի, պարի, շախմատի, ձեռագործի, լուսանկարչական և այլ խմբակներ: Այդ խմբակներում ընդգրկված են շատ շնորհալի պիոներներ ու դպրոցականներ: Պատանի նկարիչներ Անատոլի Պապանյանը, Գաստելո Գասպարյանը, Կարեն Փափազյանը, Ռուբիկ Ղևոնդյանը, Ավետիք Ասատրյանը և ուրիշներ իրենց յուղաներկ ու ջրաներկ ստեղծագործություններով բազմաթիվ անգամ մասնակցել են ռեսպուբլիկական, միութենական և միջազգային ցուցահանդեսներին: Գրական խմբակի անդամներ Միքայել Քանքանյանի, Գրիգոր Ջանիկյանի, Ժորա Մխիթարյանի ոտանավորները տպագրվում են «Պիոներ կանչ» թերթում և «Պիոներ» ամսագրում: Շախմատի խմբակը երկար ժամանակ է, ինչ հեռագրով մրցում է Չեխոսլովակիայի պատանի շախմատիստների հետ:

Շատ ու շատ գործեր են կատարում Երևանի Պիոներների պալատում:

Մեր ամսագրի այս համարում տպագրում ենք նկարչական և գրական խմբակների անդամների ստեղծագործություններից:



«ՏԵՍԱՐԱՆ ԾԱՂԿԱՁՈՐԻՑ» (յուղաներկ)—ՀՐԱՉԻԿ ԳՐԻԳՈՐՅԱՆ
(13 տարեկան)

## ԳՅՈՒՂԻ ԱՌԱՎՈՏԸ

Ա՜խ, ինչքան լավ է գյուղակում մեր հին,
Երբ առավոտը իջնում է դանդաղ,
Տատս է արթնացնում առավոտ ծեգին,
Ու ես պատմում եմ երազըս չքնաղ:

Թռվռում եմ ես ծեգից-իրիկուն,
Ու մուշ-մուշ քնում մեր դռան առջև,
Երնեկ դու չանցնես, իմ լա՜վ մանկություն,
Միշտ երազ մնաս դու հազարաթև:

## ԻՄ ԶՈՒԼԱԼ ԱՌՈՒ

Ինչքա՜ն ուրախ ես, իմ զուլալ առու,
Ինչքա՜ն երգեր ես երգում միալար.
Քո անուշ լեզուն երբեք չի հոգնում,
Եվ դու երգում ես անքուն, անդադար:

Քո չքնաղ ափին շատ ենք թռչկոտել,
Երգել ենք երգեր քեզ հետ միասին,
Բայց մեր երգն արդեն ուրիշ է դարձել,
Դեռ երգում ես դու քո լավ երգը հին:

МИՔԱՅԵԼ ՔԱՆՔԱՆՅԱՆ



«ՎԱՂ ԳԱՐՈՒՆ» (ջրաներկ) ԿԱՐԵՆ ՓԱՓԱԶՅԱՆ



«ԴԱՎԻԹԸ ԳԱԶԱՆԱՐԱՆՈՒՄ» (ջրաներկ)—ԿԱՐԵՆ ՓԱՓԱԶՅԱՆ (9 տարեկան)

## Գ Ա Ր Ո Ւ Ն

Թռչուններն են դայլայլում
Առավոտից իրիկուն,
Պայծառ արևն է փայլում,
Դաշտում կանչում է կկուն:

Անուշ զեփյուռն է փչում,
Ու շնկշնկում միալար,
Եվ ուռենին է ճոճում
Գարնան ճյուղերն իր դալար:

Սարալանջին ու հովտում,
Այնքան քնքուշ, այնքան հեզ,
Ծաղիկներն են վառ ժպտում.
Որքա՜ն լավ է դաշտը, տե՛ս:

ՎԱՀՐԱՄ ՄԵԽԱԿՅԱՆ



«ԱՇՈՒՆԸ ԵՐԵՎԱՆՈՒՄ» (յուղաներկ) ԱՆԱՏՈԼԻ ՓԱՓԱՆՅԱՆ (14 տարեկան)

## ԳԻՇԵՐԵՐԳ

Գիշեր է արդեն,
Աստղերն են ժպտում,
Հեզիկ ու նազիկ
Զեփյուռն է երգում:

Սարի ետևից
Լուսինը ծագեց,
Նիրհող աշխարհին
Իր լույսը փռեց...

Ծաղկունքը գեղաչ
Նիրհում են մուշ-մուշ
Առուն ծորակում,
Երգում է անուշ...

ԺՈՐԱ ՄԽԻԹԱՐՅԱՆ

## ԱՆԱՀԻՏԻ ԾԱՂԻԿՆԵՐԸ

Անահիտը իր պարտեզում
Շատ ծաղիկներ է ցանում.
Շուշան, նարգիզ ու մեխակ,
Է՛լ վարդ, հասմիկ ու զանգակ:

Յնցուղն առնում ու վազում,
Ծաղիկներն է նա ջրում:
Ամեն, ամեն առավոտ,
Երբ զարթնում է երազկոտ,

Եվ տոնական մայիսին
Ծաղիկները, տես, ծեռքին,

Հայրիկի հետ միասին
Մասնակցում է շքերթին:

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

## ԱՌՎԱԿ

Առվակ, իմ սրտին մոտ ես դու այնպես,
Քեզ չեմ տարբերում մեր մեծ գետերից,
Զէ՞ որ, իմ անգին, դու էլ նրանց պես
Գալիս ես երկրիս հպարտ լեռներից:

Իմ Հայրենիքի չքնաղ վայրերով
Քչքչում ես դու ու հոսում վետ-վետ,
Մեր այգիներում՝ թարմության սովոր,
Քո կանչն եմ լսում ես ամենուրեք:

Առվակ, իմ սրտին մոտ ես դու այնպես,
Քեզ չեմ տարբերում մեր մեծ գետերից,
Զէ՞ որ, իմ անգին, դու էլ նրանց պես
Գալիս ես երկրիս հպարտ լեռներից:

ԱՐՇԱԼՈՒՅՍ ՊԵՏՐՈՍՅԱՆ



«ԲՆԱՆԿԱՐ» (յուղաներկ) ՌՈՒԲԻԿ ՂԵՎՈՆԴՅԱՆ (14 տարեկան)




## ԿԱՐՄԻՐ ՎԵՐՆԱՇԱՊԻԿԸ

Մ. ԿՈՐՇՈՒՆՈՎ

Երեկոները մենակ մնալով տանը, պառավ մայրը հաճախ կարգի էր բերում կապոցի մեջ եղած իրերը։ Հին, խունացած լրագրերի, կանացի գույնզգույն, զոլավոր ուսնոցի և էժանագին նկարների հետ պահվում էր թեք օձիքով կարմիր սատինե մի վերնաշապիկ։ Նրա վրա մազութի բծեր կային, իսկ եզրերը գնդակներից ծակծկված ու այրված էին։

Ցարական հեծյալները երկար ժամանակ փնտրում էին այդ սատինե վերնաշապիկը։ Նրանք ներխուժում էին խրճիթները, տակնուվրա անում անկյունները, սրերով քրքրում ներքնակները, զրնգզրնգացնում ներքնահարկերի չուգունե ու կավե կճուճները. շարունակ փնտրում էին նրանք, հույս ունենալով, թե կկարողանան ձեռք գցել վերնաշապիկը, որ պատկանում էր ածխահատ Երմոշին։ Նա աշխատում էր ածխահանքի վերահան սարքավորման վրա։

Ամեն առավոտ վերահանը բանվորներին իջեցնում էր ածխահանքը։ Նրա մոտ հերթապահում էր Երմոշան և, այդ պատճառով էլ ավանում մարդ չկար, որ նրան չճանաչեր։ Նա գլխին դնում էր մազութից սևացած կեպի, հագնում էր կարմիր սատինե վերնաշապիկ և ուսից թեյով կախ էր գցում մի տափակ արկղ, որը նույնպես սևացել էր մազութից։ Այդ արկղում Երմոշան դնում էր իր գործիքները՝ մեծ պտուտակահան, մուրճ, կրաքիչ։ Բայց ամռանը գործիքների կողքին նրա մեջ հայտնվեցին երիցուկներ։ Երբ առավոտները նա աշխատանքի էր գնում, դաշտից քաղում էր ծաղիկները և պահում արկղում։

Ավանում, ուրիշ դռնակների կողքին կար նաև, ցեխված տախտակներից շինված, կաշվե ծխնիով և մեխին ամրացրած ճախարակփակիչով մի դռնակ։ Նրա մոտ երկաթյա մի կանաչ նստարան էր դրված։ Ոչ ոք չէր տեսնում, որ Երմոշան իր երիցուկները թողնում էր այդ կանաչ նստարանի վրա։ Դռնակից այն կողմ, կավով փոքր ինչ սպիտակացած տնակում ապրում էր մի աղջիկ։ Եվ նա էլ վերցնում էր Երմոշայի երիցուկները, որոնք նույնպես սևացած էին մազութից, բայց սիրելի էին նրա համար։



Մի անգամ ածխահանքում գործադուլ եղավ։ Ածխահանքերի մեջ վաղուց արդեն դժգոհություն էր առաջացել՝ կրպակներում բանվորական գրքույկներով ցածրորակ մթերքներ էին տալիս, հանքահորերում փլվածքի դեպքեր էին լինում, որովհետև շերտերն ամրացնելու համար կապալառուները փտած փայտ էին վաճառում, օդափոխու-

թյունը վառ էր կատարվում, և մարդիկ թունավորվում էին ածուխի գազից։

Ու բռնկվեց երկար տարիների ընթացքում կուտակված զայրույթը. «Բավական է, ինչ համբերեցինք»։

Ածխահանները շրջապատեցին գրասենյակի շենքը և պահանջեցին, որ իրենց հետ բանակցելու համար դուրս գա գլխավոր ինժեները։ Բայց նա հրաժարվեց բանակցություններ վարել և հեռախոսով կանչեց գավառային կայազորի ցարական հեծյալներին։

Սրերով, կարաբիններով ու լիքը փամփշտակալներով զինված՝ նրանք արշավեցին ավան։ Առջևից գնում էր յափնջով ու ծոպավոր բաշլըղով մի սպա։ Նա հրամայեց գրոհել խռովարարների վրա և ցրել նրանց։

Ածխահանները սկսեցին զինվել հանքափոր լինգերով, գազախողովակների կտորներով, բլուգներով, փորիչներով։

Երմոշան գոչեց.

— Դրոշակ, Կարմիր դրոշակ է հարկավոր։

Բայց դրոշակ չկար։ Այդ ժամանակ Երմոշան հանեց իր սատինե կարմիր վերնաշապիկը, թևերը կապեց մի երկար փայտի և որպես դրոշակ բռնեց գլխից վերև։

Հեծյալները նեղեցին ածխահաններին և սկսեցին ծեծել սրերի տափակ կողմերով ու կարաբինների խզակոթերով։

Ածխահանները նեղ օղակով շրջապատեցին դրոշակակիր Երմոշային։ Բայց նա որոշեց դիմադրել և անձնատուր չլինել։

Հեծյալների կողմն էին թռչում պտուտակներ, բոլտեր, վագոնիկների անիվներ, ածխահանի լինգեր, քարեր։

— Ցած ընկավ բակի լապտերասյունը։ Խշշալով թափվեցին գրասենյակի շենքի ապակիները, որոնց հետևում թաքնվել էր գլխավոր ինժեները։

Երմոշան՝ առանց կեպիի, մինչև գոտկատեղը մերկ, մկանոտ, մի ձեռքում բռնել էր դրոշակի կոթը, իսկ մյուսում՝ մեծ պտուտակահանը։ Նրա ուսից կախված արկղում լխլխկում էին գործիքները։



Սպան մոտեցավ կարաբիններից գնդակոծված դրոշակին։ Նա ուզում էր վերջացնել գործը ապստամբների հետ։

Բայց Երմոշան ու բանվորները նոր մղվելով պաշտպանվում էին հեծյալներից և դրոշակը չէին զիջում։

— Անձնատուր չլինել։

Ամենից ածխահատներին օգնության հասան կանայք՝ զինված սրածայր ցցերով ու անտրացիտի կտորներով։

Շուտով կայազորից եկավ հեծյալների մի օժանդակ ջոկատ, և միայն այդ ժամանակ նրանց հաջողվեց կոտրել բանվորների դիմադրությունը։

Մարտում սպանվեց Երմոշան. նրան սվինահարեց սպան։ Ձիերը տրորեցին Երմոշայի գործիքների արկղը։ Այնտեղ նաև երիցուկներ կային, որ նա չէր հասցրել թողնել դռնակի մոտի կանաչ նստարանին։

Բայց ցարական հեծյալներին չհաջողվեց գրավել դրոշակը. նա անհայտացավ։

Երբ նրանք դադարեցին դրոշակը փնտրել, Երմոշայի մոր մոտ եկավ այն աղջիկը և նրան տվեց մազութի բծերով պատած, եզրերը գնդակներից ծակծկված ու այրված, սակայն կարմիր վերնաշապիկը։

— Որտեղի՞ց է ընկել քեզ մոտ,— հարցրեց մայրը՝ կրծքին սեղմելով որդու վերնաշապիկը։

— Ես էի թաքցրել,— ասաց աղջիկը, համբուրեց պառավին ու հանգիստ հեռացավ։

Իսկ պառավը դեռ երկար ժամանակ, վերնաշապիկը բռնած, կանգնել էր տան շեմքին ու լաց էր լինում։

# ԷՋԵՐ անցյալից



ԱՄԻԼ ՄԱՆՈՒԿՅԱՆ

Երեսունհինգ տարի...։

Լենինյան պիոներական կազմակերպության փառապանծ տարեդարձը։ Այս նշանակալից օրերին, հաճելի է հիշել, թե ինչպես ծնունդ առավ Հայաստանի պիոներական կազմակերպությունը։ Դրա համար էլ ես սիրով կպատմեմ այն, ինչ հիշում եմ։

Պատկոմական (պատանի կոմունարների) կազմակերպությունը Հայաստանում փաստորեն հիմնադրվել է 1921 թվականի հունիսի 6-ին։ Բայց, պետք է ասել, որ նա սկիզբ է առել դեռ այն օրերին, երբ «Սպարտակ» միությունը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռևոլյուցիոն պայքարի էր ելել՝ տապալելու դաշնակցական կարգերը։

Ռևոլյուցիոն պայքարում կոփված անվախ տղաներն ու աղջիկները մի օր խմբվեցին ու դարձան պատկոմական կազմակերպության կորիզը Հայաստանում։ Բայց նրանք չհասցրին կազմակերպություն հիմնել... 1921 թվականի փետրվարին դաշնակների կազմակերպած ավանտյուրան, որի կազմակերպիչները նպատակ էին դրել վերականգնել բուրժուական կարգերը Հայաստանում, ժամանակավորապես հետաձգեց կազմակերպության հիմնումը։ Բայց երբ ջախջախվեցին դաշնակները, հասավ այդ ցանկալի օրը։ Հայաստանի Լուսավորության ժողովրդական կոմիսարիատը որոշում ընդունեց Հայաստանի պատկոմական կազմակերպության հիմնադրելու մասին։ Անհապաղ նշանակվեց առաջին պատկոմական շտաբը, որի պետը դարձավ կազմակերպության հիմնադիրներից՝ Ստեփան Մանուկյանը։

Ստեփան Մանուկյան...

Մեզանից ոչ մեկը չի կարող մոռանալ այն հմայքը, որ ուներ Ստյոպան։ Միջահասակ, բայց պար-

թև կազմվածքով, սիրունատես դեմքով ու առյուծի բաշով այդ երիտասարդը երեխայի բնորոշ սիրտ ուներ ու հեզահամբույր բնավորություն։ Նրան շատ էր սազում պիոներական այս փողկապը և նա լավ գիտենալով պիոներներին, կարողանում էր տիրանալ ամեն մի երեխայի սրտին ու հոգուն։ Այդ հատկությունները նրան դարձրել էին ամենաժողովրդական մարդը ռեսպուբլիկայում։ Ամենաանհնազանդ երեխաների լեզուն անգամ զարմանալիորեն հանդարտում էր մեր Ստյոպան. նրա հաջողության գաղտնիքը երեխաներին սիրելու և նրանցից սիրվելու մեջ էր...

Շտաբի անդամներ ընտրվեցին Աղո Աղոյանը, Անդրանիկ Ծատինյանը, Արգար Մովսիսյանը, Հրայր Իսաբեկյանը, Պարույր Հարությունյանը, Երվանդ Թալեյանը, Միրաք Մանասյանը, Հերանուշ Սալախյանը, Մարո Մուրադյանը, Հովհաննես Պետյանը, Լուսավորության մինիստրության ներկայացուցիչ Տիգրան Մուշեղյանը և ուրիշներ։

Պատկոմական կազմակերպությանը ղեկավարում էր կոմերիտմիությունը։

Դաշնակցությունը ջախջախված էր, բայց այդ չէր նշանակում, որ նա համակիրներ չուներ մեր երկրում։ Կոմերիտմիությունը հաճախ էր հանդիպում նման մարդկանց դպրոցներում, որոնք պաշտպանում էին բուրժուական մանկական կազմակերպությունը՝ սկաուտներին և, ընդհակառակը, դիմադրում պատկոմական կազմակերպությունների ստեղծմանը, քարերով դիմավորում պատկոմական հրահանգիչներին։

Բայց օր-օրի աճող մեր շարքերը մահացու սպառնալիք էին նաև սկաուտների համար, որոնց կազմակերպությունը մի տարվա կյանք էլ չունեցավ...

Հայ սկաուտների մեծ մասը անցավ պատկոմների կողմը։

1923 թվականի սեպտեմբերին Երևանում հրավիրվում է պատկոմական կազմակերպության առաջին Հոկտեմբերական-(հավաքը), ուր հավաքվել էին հազար պատանի պատգամավորներ, ամփոփելու համար անցած երկու տարվա իրենց հերոսական աշխատանքը։ Հավաքի նշանաբանն էր.— աշխատավոր երեխաներին ներգրավել պատկոմական շարքերը և շարունակել պայքարը դաշնակցական երիտասարդական միության մնացորդների դեմ։ Հավաքը փակվելուց հետո, հրավիրվեց պատկոմական կազմակերպության առաջին համագումարը, որը բացեց կենտրոնական շտաբի պետ Ստեփան Մանուկյանը։ Պարտիայի և կառավարության անունից հատուկ ողջույնի խոսք ասաց Լուսավորության ժողովրդական կոմիսար Ասքանազ Մռավյանը։ Նա պատկոմներին կոչ արեց նմանվել Ղուկաս Ղուկասյանին, Արմենակ Բուդաղյանին, որոնք սովետական իշխանության գաղափարի հաղթանակի համար տվին իրենց դյուցազնական կյանքը։



ՍՏԵՓԱՆ ՄԱՆՈՒԿՅԱՆ

Ամենքս հավաքվել էինք պիոներական տան հրապարակը (այժմ Լենինի հրապարակ), ուրախ երգում և պարում էինք... Պատկոմական շեֆերները մեզ հրավիրում են շարք ու մենք պատվի բռնած՝ լսում ենք բոլշևիկների պարտիայի 13-րդ համագումարի պատմական որոշումը։ Այդտեղ ասվում էր, որ սովետական երկրի պիոներական կազմակերպությունը այսուհետև կոչվելու է «Պատանի պիոներների Լենինի անվան կազմակերպություն»։ Դա 1924 թվականի մայիսին էր։ Այդ օրվանից մեզանից յուրաքանչյուրը երկու նվիրական բան պետք է իր աչքի լույսի պես պահպաներ. Վլադիմիր Իլյիչ Լենինի անունը ու բանվոր դասակարգի արյունով ներկված կարմիր փողկապը։ Երդվեցինք։ Եվ այդ երդումը կատարելու գործում Լենինյան պիոներական կազմակերպությունը հերոսական քիչ օրինակներ չի տվել։ Բավական է հիշել Պավլիկ Մորոզովին, իսկ մեզանում՝ Գրիգոր Հակոբյանին, որոնք ընկան թշնամու ձեռքից, բայց բարձր պահեցին լենինյանի իրենց կոչումը։

Հետագա երկու հավաքներում (մեկը Լենինականում, մյուսը՝ Երևանում) պիոներական կազմակերպությունն ամփոփեց իր աշխատանքներն ու աչքի ընկնող հաջողություններով մասնակցեց անդրկովկասյան, ապա համամիութենական առաջին հավաքներին։ Ինչքա՜ն ուրախ էինք մենք, երբ գր-



նացինք Մոսկվա առաջին հավաքին մասնակցելու: Այնտեղ հավաքվել էին Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաների պատանի պատգամավորները, ինչպես նաև արտասահմանյան շատ ներկայացուցիչներ: Մենք շրջապատված էինք պարտիայի ու կառավարության, ինչպես և Մոսկվայի աշխատավորության ջերմ հոգատարությամբ: Անմոռանալի էին այն պահերը, երբ մենք, իբրև հյուրեր, անցկացրինք մայրաքաղաքի պիոներների բնակարաններում: Մոսկվայում մեզանից շատերը բախտ ունեցան սեղմել Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայայի ձեռքը, լսել նրա զրույցները Իլյիչի, կոմունիստական դաստիարակության մասին. Ես այդ երջանիկներից մեկն էի: Ես լսեցի նաև Լենինի փառապանծ պարտիայի Կենտրոնական Կոմիտեի՝ հավաքին ուղղած ողջույնը, որ կարդաց ընկ. Կագանովիչը: Այդ ճառի մեջ պիոներական փողկապի նշանակության վերաբերյալ մասը անմոռանալի տպավորություն թողեց ինձ վրա ու ես երբեք չեմ մոռանա այն:

Այդ հավաքում Հայաստանի պիոներները աչքի ընկան նաև իրենց փողային նվագախմբով: Դա միության մեջ առաջին փորձն էր, երբ բոլոր նվագողները պիոներներ էին: Նվագախմբի էնտուզիաստ Մաէստրոն՝ Նիկոլայ Թերմուբազյանը, ընկած իր խմբի առաջ, թնդացնում էր Մոսկվայի փողոցները, որոնք տոնական տեսք ունեին ու ծփում էին ալ դրոշներից, տրանսպարանտներից, իսկ գիշերները՝ հրավառություններից... Երջանկային օրեր էին...

Հավաքի օրերին մոսկվացիները տեսան պիոներների հիանալի գործերը՝ սքանչելի մարզահանդեսներ, ինքնագործ արվեստի փայլուն ելույթներ, նկարչություն, քանդակագործություն, փորագրություն, ձեռագործի հիանալի նմուշներ: Նրանք պարտիային զեկուցեցին գարնանացանին, անգրագիտության վերացմանն օգնելու, երկաթի հավաքման և իրենց կատարած այլ աշխատանքների մասին:



Պարտիան ու կառավարությունը ամեն ինչ անում էին երեխաների հանգիստը կազմակերպելու համար: Այդ ուշադրությամբ ստեղծված բարիքներից են Մանկական երկաթուղին, Պիոներների պալատը, Պատանի հանդիսատեսի թատրոնը, ճամբարները և այլն:

Հետաքրքրական էր առանձնապես կյանքը պիոներական ճամբարներում: Բնության ծոցում երեխաները իրենց առողջությունն էին կոփում, գիտակցությունն ձեռք բերում: Հաղթահարելով բնական շատ դժվարությունները՝ լեռ, ձոր կտրելով, գետեր ու անտառներ անցնելով, պիոներները այցելում էին հայրենի երկրի հուշարձանները, ծանոթանում բնության խաղերին, հավաքում բազմաթիվ թանգարանային նմուշներ ու բերում՝ սկզբում ցուցադրում ճամբարում, ապա տանում հարստացնում հարազատ դպրոցի կաբինետները: Պիոներներն օգնում էին կոլտնտեսականներին նրանց ամառային աշխատանքներում: Հայաստանի պիոներները ինտերնացիոնալ կապերի մեջ էին արտասահմանյան երեխաների հետ: Նրանք կապեր ունեին նաև մեծ մարդկանց հետ: Ֆրանսիայի հանճարեղ գրող Ռոմեն Ռոլանին նրանք որպես հյուր հրավիրեցին մասնակցելու Սովետական Հայաստանի 15-րդ տարեդարձի տոնախմբությանը: Ռ. Ռոլանը պատասխանեց. «Ես ցնցված եմ ձեր ժողովրդական տոնակատարությանը ներկա գտնվելու մասին. ինձ ուղարկած

ձեր սրտագին հրավերով։ Բայց դժբախտաբար ես արդեն ձեր տարիքին չեմ և նույնիսկ ոչ էլ ձեր ծնողների տարիքին, իմ առողջությունը շատ վատ է և ճանապարհորդելն ինձ համար շատ է դժվար։

Իմ մեջ հիանալի հիշողություններ են մնացել այս ամռան Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկու մոտ մեր ունեցած հանդիպումից։ Եվ քանի որ ես ենթադրում եմ մոտակա երկու տարիների ընթացքում նորից այցելել ՍՍՀՄ, ապա կարող է պատահել, որ մենք նորից տեսնվենք։)

Ձեզ, ինչպես նաև Խորհրդային Հայաստանի ձեր բոլոր ընկերներին, իմ լավագույն ցանկություններն եմ հղում։ Ձեր երկիրը մեկն է այն երկրներից, որ պետք է առանձնապես ուրախ լինի, մեծ Խորհրդային Միության մի մասը կազմելու համար, որի գրկում նա գտավ այն անվտանգությունը, որ նրան չէր վիճակված դարերի ընթացքում։ Հայաստանի անցյալը երկարատև տառապանքների մի պատմություն է։ Բայց այդ անցյալը հեռավոր է։ Այժմ ձեր հայրերը կառուցում են ապագայի հիմքը և դուք պետք է շարունակեք ու ավարտեք այդ հսկայական շինարարությունը։ Ուրեմն զինվեցեք արիությամբ, անշահախնդրությամբ, զգաստությամբ ու գիտելիքներով։ Եվ կատարելով այդ ամենադժվարին աշխատանքը հանուն ձեր ազգի բարեկեցության, հիշեցեք, որ դուք այդ բանն անում եք բոլոր ժողովուրդների համար, ամբողջ մարդկության համար, և դուք ա՛յն ինտերնացիոնալ քաղաքացիներն եք, որի հաղթանակը թելադրվում է ոչ միայն արդարության զգացմունքից, այլև յուրաքանչյուր ազգի շահերից։

Միայն այն ժամանակ, երբ կջնջվեն սահմանները աշխարհի տարբեր պետությունների միջև, երբ կանհետանա մրցակցությունն ու ատելությունը տարբեր ցեղերի միջև, երբ վերջնականապես հաստատվի անդասակարգ հասարակություն, այն ժամանակ միայն ժողովուրդները կկարողանան ազատ շունչ քաշել և ամբողջապես նվիրվել խաղաղ աշխատանքի ու լիովին վայելել կյանքի ուրախությունը։

Պատվավոր պիոներ՝ Ռոմեն Ռոլլան»։



Հայաստանի պիոներական կազմակերպության պատմությունը հարուստ է նշանավոր մարդկանց հետ ունեցած հանդիպումների տպավորություններով ու այդ մարդկանց հղած ուղերձներով։ Հիշենք միայն Ն. Կ. Կրուպսկայայի, Մ. Ի. Կալինինի, Պ. Պ. Պոստիշևի, Վ. Մ. Մոլոտովի, Մ. Գորկու, Ա. Խանջյանի հետ պիոներների ունեցած հանդիպումները։

Երեսունհինգ տարի է անցել մեր երկրում պիոներական կազմակերպության ստեղծման օրից։ Այդ տարիներին նշանակալից շատ գործեր են կատարել մեր անձնվեր Հայրենիքի պատանի քաղաքացիները, կարմրափողկապ պիոներները։ Քիչ բան չի արել նաև պիոներական կազմակերպության Հայաստանի ջոկատը։ Ահա մի քանի անմոռանալի էջ Հայաստանի պիոներական կազմակերպության պատմությունից, որ անջնջելի է մնացել իմ՝ առաջին պիոներներից մեկի հիշողության մեջ։



[1] Հայաստանի պիոներների Գորկու հետ ունեցած հանդիպմանը ներկա է եղել նաև Ռոմեն Ռոլլանը։

# փոքրիկ



# ճնճղուկի օրինակը

ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Կա հինավուրց մի զրույց փոքրիկ ճնճղուկի մասին, որն ասում են, աշխարհիս երեսին ապրած է լինում դեռևս միայն մի գարուն ու ամառ, երբ հանկարծ ամպերի սաստիկ որոտ է լսում։

— Այս ի՞նչ ձայն է, մայրիկ,— հարցնում է նա։

Մայր ճնճղուկը, որ նույնպես շատ լավ չէր հասկանում տիեզերական երևույթները, պատասխանում է.

— Չգիտեմ, ձագուկս, այսպիսի ուժեղ դղրդոց ես էլ եմ առաջին անգամ լսում։ Կարծես թե երկինքը փլվում է։

Որոտը կրկնվում է առավել ուժգին։

— Այո՛, այո՛,— ասում է մայրը սարսափահար,— կա չկա երկինքը փլվում է։

Ճնճղուկն այս որ լսում է, գլուխը դուրս է հանում բնից և թևիկները թափահարելով սլանում ցած։

— Էլ ինչի՞ ես սպասում, արի՛, մայրիկ...— ասում է նա, իջնում գետին և մեջքի վրա պառկելով, տոտիկները պարզում է վերև։

— Այդ ի՞նչ ես անում, ձագուկս, ինչի՞ համար,— նրա մոտ թռչելով հարցնում է մայրը։

— Ինչպե՞ս թե ինչի համար... որ պահեմ, երկինքը չփլվի,— պատասխանում է ձագը։

Ասում են, իբրև թե այս զրույցը հորինողները ուզեցել են ծիծաղել ճնճղուկի ձագի վրա, որ իր ճնճղուկ ուժով այդպիսի բեռի տակ է ուզեցել մտնել, ուզեցել է իր խելքով փրկել աշխարհը կործանումից։

Բայց մի՞թե այդպես է։

Ճնճղուկի ձագը ոչ թե ծիծաղի, այլ հիացմունքի արժանի է հենց միայն նրա համար, որ իր ճնճղուկ ուժով, աշխարհին սպառնացող վտանգն իմանալուն-պես, գլուխը կորցնելու տեղ, իրեն մոռացած, նետվում է, որ կանխի վտանգը՝ իրեն էլ իր ունեցած բոլոր ուժերով։ Ի՞նչ անենք, որ նրա ունեցածը ճնճղուկի ուժեր են, այդքան է նա ստացել բնությունից։

Իսկ լա՞վ են այն երեխաները, որոնք, ասենք թե, բնությունից շատ էլ օժտված են, բայց ծույլ են, մեկի մատից փուշ չեն ուզում հանել, ոչ տան գործի հետ գլուխ ունեն, ոչ՝ դաս սովորելու։ Հենց միայն անպետք մարդու պես բոյ են քշում և, որ մեծանան, չգիտես, այն ժամանակ գոնե հասարակության մի բանի պետք են գալո՞ւ, թե փորձանք են դառնալու նրա գլխին։

Մինչդեռ, ի՜նչ բախտ է, երբ կարող ես քո բոլոր ուժերը տալ հայրենիքիդ, մարդկությանը, թող որ քո բոլոր ուժերը լինեն շատ փոքր, նույնիսկ մի ճնճղուկի ուժերի չափ։

# Տիկնիկն ու արջուկը

Գ. ԱՎԱԳՅՈՋՅԱՆ

Վախեցել է տիկնիկն իմ,
Ձեռք ու ոտքը թուլացել,
Տեսել է նա արջուկին
Ու չար գազան է կարծել։

Հիմա պառկած բազմոցին,
Ոչ խոսում է, ոչ՝ լսում.
Երեսին ջուր ցանեցի,
Հազիվ աչքերն է թարթում։

Ա՜խ, չար արջուկ, սպասիր,
Քեզ կպատժեմ անպայման,
Տիկնիկ ջան, մի՛ վախեցիր,
Նա շորից է քեզ նման։



Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ՈՐ ԱՅԴՊԵՍ Է...

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

— Ես շաքար եմ, շաքար եմ,
Շաքարի պես քաղցր եմ։
— Թե շաքար ես, զգույշ կաց,
Կուտի մկնիկը հանկարծ։
— Որ այդպես է, մկնիկ եմ,
Պստիկ եմ ու ճստիկ եմ։
— Թե մկնիկ ես, զգույշ կաց,
Կգա փիսիկը հանկարծ։
— Որ այդպես է, փիսիկ եմ,
Ճարպիկ ու ժիր Զիզիկ եմ։
— Թե փիսիկ ես, զգույշ կաց,
Կգա Քուչիկը հանկարծ։

— Որ այդպես է, Քուչիկ եմ,
Փափլիկ-մափլիկ պոչիկ եմ։
— Թե Քուչիկ ես, զգույշ կաց,
Կգա գայլուկը հանկարծ։
— Որ այդպես է, գայլ եմ, գայլ,
Ձեզ կբռնեմ անպատճառ։
— Թե որ գայլ ես, զգույշ կաց։
Կգա որսորդը հանկարծ։
— Չէ, որսորդ եմ իսկական,
Ունեմ մի մեծ հրացան.
Չեմ վախենա ոչ մեկից,
Ես ուժեղ եմ ամենքից...



Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

## ԼԵՎԻԿՆ ՈՒ ԱՔԼՈՐԸ

Ն. ԶԱՐՅԱՆ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ



Լևիկը, պապան, մաման և Սեդիկը եկել են ամառանոց։

Նրանք ապրում են մի փոքրիկ, սիրուն տան մեջ։ Պատշգամբը կապույտ է, առաջը մի գեղեցիկ պարտեզ կա, մեջը լիքը հավեր, ճուտիկներ և մի մեծ աքլոր։

Այդ աքլորի պոչն ու թևերը փայլփլում են ինչպես պապայի կարմիր փողկապը։

Լևիկը շատ է սիրում ընկնել հավերի հետ և ծաղիկների տակ ծվծվացող ճուտիկներին բռնել։ Բայց վախենում է աքլորից։ Աքլորը թափահարում է անագին թևերը, ցցում է իր ծուռ դրած կատարը, բաց է անում իր կեռ կտուցը և ասում.

— Կոո՜ւ, կո՛ւ-կո՛ւ-կո՛ւ-կո՛ւ...

Այսինքն՝ կտուցով կտամ, գլուխդ կջարդեմ. իմ ճուտիկներին ձեռք չտաս։

Լևիկը լեղապատառ վերադառնում է պատշգամբ և խլում Սեդիկից նրա խնձորը։ Հապա՛։ Լևիկը շատ քաջ տղա է, բայց այդ անիրավ աքլորը թույլ չի տալիս, որ ցույց

տա իր քաջությունը։ Դրա համար Լևիկը լացացնում է Սեդիկին։ Թող աքլորը տեսնի, թե նա ինչեր կարող է անել։

Լևիկը հիմա հո փոքր չէ։ Դարձել է արդեն հինգ տարեկան։ Իսկ Սեդիկը ընդամենը երեք տարեկան է։ Մանուշ մորաքույրն ասում է, աքլորն էլ է երեք տարեկան։ Այ զարմանալի բան. ինչու Լևիկը Սեդիկից երբեք չի վախենում, իսկ աքլորից վախենում է։

Ա՜խ, ինչ լավ է Լևիկենց ամառանոցում։ Միայն թե չլիներ աքլորը։

Մաման ամեն օր ճաշ է պատրաստում և հսկում, որ Լևիկը Սեդիկին չլացացնի։ Պապան շուկայից բերում է հաց, միս, կարագ, ձմերուկ, տանձ, խնձոր և ուրիշ մրգեր։ Պապան ու մաման Լևիկին ամեն օր ստիպում են, թե կաթ խմիր, բուլկին խփշտիր, կոտլետ կեր։ Իսկ Լևիկը սիրում է ուտել Սեդիկից խլած բաները։

լով, որ աքլորը ճտիկների միջից բարձրացնում է իր կեռ կտուցը և բարկանում.

— Կո՛ւ-կո՛ւ-կո՛ւ-կո՜ւ...

— Այսինքն՝ կտուցով կտամ, գլուխդ կջարդեմ, եթե մեկ էլ քրոջդ լացացնես։

Բայց պապայի մոտ Լևիկը չի վախենում աքլորից, պապայի ձեռնափայտը շպրտում է դեպի ճտիկանոցը և աքլորի ջգրու ավելի բարձր է գոռում.

Ո՜ւղղղ... ո՜ւղղղ...

Այն ժամանակ պապան Լևիկին գրկում է, դնում ծնկների վրա, իր փշոտ երեսը քսում է Լևիկի երեսին և ասում.

— Լևի՛կ ջան, քրոջդ մի՛ լացացնի և ինքդ էլ լաց մի՛ լինի, թե չէ՝ աքլորը կծիծաղի վրադ։ Չէ՞ որ դու քաջ տղա ես։

Լևիկը տզզոցը կտրում ու հարց է տալիս.

— Պա՛, ես եմ քաջ, թե աքլորը։

— Աքլորը,— ասում է դեռ բարկացած մաման.— Աքլորը քեզանից համ քաջ է, համ՝ խելոք։





Սեդիկը տզզում է և հազալուց խեղդվում։

Մաման բարկանում է, ապտակով շմփացնում է Լևիկին և ասում.

— Գլուխդ կջարդեմ, եթե մեկ էլ քրոջդ լացացնես։

Նրա ձեռքի մատանին շատ է ցավացնում Լևիկի երեսը։ Լևիկը ոտքերը խփում է հատակին և լաց լինում այնքան ուժեղ գոռա-

Պապան, մաման ու Սեդիկը միասին ծիծաղում են։

Այ թե ինչ արեց այդ անպետք աքլորը։ Եթե նա թույլ տար մի անգամ ճուտիկին բռնել, Լևիկը հո չէ՞ր խլի Սեդիկի խնձորը, Լևիկի վրա հո չէի՞ն ծիծաղի։

Լևիկը նորից է պառկում հատակին, ոտքերը թափահարում և ավելի բարձր գոռում.

— Ո՜ւղղղ... ո՜ւղղղ...

Մի լավ ազգալուց հետո նա վեր է կենում, հենվում է պատշգամբի ճաղին և նայում դեպի պարտեզը: Այնտեղ թփերի տակ աքլորը հավերի հետ միասին քուջուջ է անում: Իսկ ճուտիկները իրենց մամայի հետ խոսում են:

— Ծիվ-ծիվ-ծիվ-ծիվ... Ծիվ-ծիվ-ծիվ-ծիվ...

Այսինքն՝ Լևիկը մեզ չի բռնի, Լևիկը մեզ չի բռնի:

Ա՜խ, Լևիկը, ո՜նց կբռներ նրանց, եթե չլիներ աքլորը:

Ամեն գիշեր երազում Լևիկը կռվում է աքլորի հետ և նրան հաղթում: Իսկ առավոտյան զարթնում քնից, վազում է պատշգամբ և լսում է աքլորի ձայնը.

— Կտա-կտա-կտա-կտա... ծուղրուղո՜ւ...





Այսինքն՝ կտուցով կտամ, գլուխդ կջարդեմ, եթե մեկ էլ երազում ինձ հաղթել ես։

Ա՜յ ձեզ զարմանալի բան. երազի մեջ աքլորն է Լևիկից վախենում, օրը ցերեկով Լևիկն է աքլորից վախենում։

Այսպես անցնում են օրերը։

Մաման էլի ճաշ է պատրաստում, պապան շուկայից խնձոր է բերում և տալիս՝ մեկը Սեդիկին, մեկը՝ Լևիկին։ Հետո վերցնում է սրբիչը և գնում է գետը՝ լողանալու։ Լևիկը նորից է մտածում, որ չի կարելի խլել Սեդիկի խնձորը։ Նա Սեդիկի խնձորը փախցնում է, մաման բռնում է նրան, մի լավ դնգստում և խնձորը վերադարձնում Սեդիկին։ Լևիկն այս անգամ չի էլ փորձում տզզալ, որովհետև պապան տանը չէ, ում համար պետք է տզզա։

— Ջո՜ւ, ջո՜ւ, ջո՜ւ, ջո՜ւ...— լսվում է բակից Մանուշ մորաքրոջ ձայնը։

Մանուշ մորաքույրը հավերին կուտ է տալիս։

Լևիկը շատ է սիրում նայել, ինչպես հավերը կուտ են ուտում։

Նա խնձորը դնում է գրպանը, վազում է պատշգամբ և հենվում ճաղերին։ Եվ ի՞նչ է տեսնում Լևիկը։

— Կո՛տ-կո՛տ-կո՛տ-կո՛տ...— ասում է աքլորը հավերին։

Այսինքն՝ ա՜յ, կուտն այստեղ է, ա՜յ, կուտն այստեղ է։

Հավերը վազում են այստեղ ու այնտեղ և շուտ-շուտ կտցահարում կուտը. Իսկ ինքը, աքլորը, չի ուտում, գլուխը բարձր բռնած, թեք դրած գլխարկը շարժելով, սպասում է, մինչև հավերը կշտանան։

Մանուշ մորաքույրը նորից մի բուռ կուտ է շաղ տալիս աքլորի առաջ։ Բայց հենց որ հավերը մոտ են վազում, աքլորը դադարում է ուտելուց։ Հպարտ կատարը նորից բարձրացնում է և հսկում, որ հավերին ոչ ոք չանհանգստացնի։



Լևիկը շատ է զարմանում աքլորի վրա։

Նա ուզում է նրա հետ մրցել։ Գնում է, տնից հաց է բերում ու քիչ-քիչ նետում հավերին։ Մի փշուր ընկնում է աքլորի առաջ։ Աքլորը կտուցով հացի փշուրը վերցնում է, որ ուտի։ Բայց իսկույն վրա է հասնում մի սպիտակ, սիրուն հավ։ Աքլորն իր կտուցից հացի փշուրը հանում ու տալիս է սպիտակ հավին։ Հետո՝ գլուխը բարձր բռնած նայում է Լևիկի կողմը և ասում.

— Կո՛տ-կո՛տ-կո՛տ-կո՛տ...

Այսինքն՝ տեսնո՞ւմ ես, Լևիկ, դու Սեդիկից խլում ես նրա խնձորը, իսկ ես իմ բերանից կուտը հանում, տալիս եմ քույրիկիս։ Հիմա ո՞վ է մեզանից ավելի խելոքն ու քաջը։

Աքլորի այս խոսքերը շատ են վիրավորում Լևիկին։

Նա բարկությունից ուռեցնում է թշերը, ներս է վազում և իր խնձորը մեկնում Սեդիկին։

— Ա՛ռ։

Մաման ինքնիրեն ծիծաղում է, բայց բան չի ասում։

Էլի անցնում են օրերը։ Լևիկը իր քրոջից էլ բան չի խլում։ Ի՛նքն է իր բաժինը միշտ նրան տալիս։

Պապան ու մաման իրար աչքով են անում ու ժպտում։

Գիշերը, երբ Լևիկը սուս քնած է լինում, պապան ու մաման իրար հարցնում են.

— Ինչի՞ց է այդքան խելոքացել մեր Լևիկը։

Մաման ասում է.

— Իմ ապտակները գիտեն։

Պապան ասում է.

— Ո՛չ, իմ գովասանքները։

Եվ մինչև այսօր էլ պապան ու մաման չգիտեն, թե ով Լևիկին դարձրեց այդքան խելոք ու բարի։

ՎԱԼԴԻՍ ԼՈՒԿՍ
(Լատվիական գրող)

# ԾՈՒՅԼ Յանիսը



Երկուշաբթի մեր Յանիսի մեջքն էր ցավում.
Ամա՜ն, ամա՜ն,
Ո՜նց էր ցավում։
Երեքշաբթի մազերն էին ցավում նրա.
Ամա՜ն, ամա՜ն.
Շարժվում էին գլխի վրա։
Չորեքշաբթի ցավում էին տասը ատամ.
Ամա՜ն, ամա՜ն,
Միանգամից տասը ատամ։
Հինգշաբթի օրն—ա՜յ քեզ փորձանք—ոտքն էր ծալ-
վում.
Ամա՜ն, ամա՜ն,
Ոտքն էր ծալվում։
Ուրբաթ օրը ո՜նց էր ցավում նրա փորը.
Ամա՜ն, ամա՜ն,
Ի՞նչ կլինի նրա օրը։
Շաբաթ օրն էլ պտտվում էր գլուխն այնպես.
Ամա՜ն, ամա՜ն,
Պտտվում էր իր հոլի պես...
Կիրակի էր միայն լինում Յանիսն առողջ.
Ուխա՜յ, ուխա՜յ,
Քեֆ էր անում առոք-փառոք։

# ՊԱՐԾԵՆԿՈՏ ՊԻՉԻՆԸ



ԼԱՅՄՈՆ ՊԵԼՄԱՆԻՍ
(Լատվիական գրող)

«Հորս հետ մի օր գնացինք որսի։
Մեկ էլ... մի շլդիկ դուրս սողաց փոսից։

Պիչին, քեզ տեսնեմ, աչքս խփեցի,
Սպանեցի ու թևիս գցեցի։

Նոր էի եկել դեռ նրա հախից,
Տեսնեմ՝ երկու գայլ թռան դիմացից։

Մեկին վերջ տվի ծեռքիս դանակով,
Իսկ մյուսին էլ՝ հորըս մահակով։

Մի քիչ էլ այսպես առաջ գնացի,
Տեսնեմ՝ մի մեծ փիղ ու մի գետաձի։

Հրացանի կոթն ուսիս դեմ արի,
Թըը՜խկ—և իսկույն տապարակս դրի»։—

Պատմում էր Պիչինն ու մեկ էլ անցքից
Մի մուկ դուրս թռավ՝ ոտքերի տակից։

— Հայրի՜կ,—գոռաց նա գույնը թռցրած,—
Օգնի՛ր, առյո՜ւծ է հարձակվել վրաս։

Փոխադրեց՝ Գ. ԷՄԻՆ

# ԷՔՍԿԱՎԱՏՈՐԸ

ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Այստեղ, մոտիկ մեր փողոցում,
Հին տների շարքերի մեջ,
Մի մեքենա տեղ է բացում,
Որ տուֆ քարից շենք շինեն մեծ:

Նկարազարդ գրքերում քո
Հանդիպել է քեզ այդ հսկան,
Երկաթյա իր խոշոր ձեռքով
Եվ շերեփով իր խոր ու լայն:

Տարօրինակ այդ հսկային
Արդեն վաղուց տեսել ես դու,
Սակայն այսօր ահա, նայի՛ր,
Թե նա ինչպես է աշխատում:

Հող ու քարի շերտերն ամուր
Դողդողում են ասես ահից,
Երբ որ Մինաս քեռին հմուտ
Շարժում է ղեկն այդ հսկայի:

Ետ է գնում շերեփը մեծ
Եվ ուժ առած գալիս կրկին
Ու խրում է շերտերի մեջ
Սուր-սուր ճանկերն իր ահագին:

Քանդում է նա գետինն արագ,
Ու ինչպես փիղն իր կնճիթով,
Իր վիթխարի գրկում առած,
Բարձրացնում է թե քար, թե հող:

Պտտվում է մեկ էլ տեսար,
Ծանր նստած իրեն տեղում,
Այդ մեքենան՝ ժիր ու վստահ
Շարժումներից Մինաս քեռու:

Տանում է նա շերեփն շտապ
Ու դատարկում հեռու մի կողմ,
Կամ «ԳԱԶ»-երի մեջ բեռնատար՝
Արագ-արագ իր մոտ եկող:

Մեկ էլ տեսար՝ սպառնալից
Դառնում է այս կամ այն պատին,



Վրա տալիս, որ նրանից
Ճանապարհն իր շուտ ազատի:

Իսկ պատերը—գաճաճ ու թեք,
Ո՜նց դիմանան նրա ուժին,
Տապալվում են նրանք մեկ-մեկ
Ինչպես սաստիկ երկրաշարժից:

Այսպես ահա մեր փողոցում,
Հին տների շարքերի մեջ
Այդ մեքենան տեղ է բացում,
Որ շենք շինեն մի նոր ու մեծ:

Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ

# Ի՞ՆՉ ԷՐ ՈՒԶՈՒՄ ՄԵՔԵՆԱՆ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Հողափորը եկավ բակ,
Ճոճեց թևը նա միակ,
Զնգացրեց թրթուռը
Ու մեկնեց մեզ իր բուռը:
— Ի՞նչ, չամի՞չ տանք քեզ մի քիչ:
Մեքենան, թե՝ ճը՜ռ, ճռռի՜նչ...
— Չամիչ չունենք, մեքենա,
Բուռդ քաշիր ու գնա՛:
— Չամիչը նա ի՞նչ անի:
— Լավ, կորիզ տանք ծիրանի...
Ելանք ու տուն վազեցինք,
Մի թաս կորիզ բերեցինք.
Բայց ճանկերը որ տեսանք,
Մոտից արագ հեռացանք...
Ու մրթմրթաց մեքենան.
— Է՜հ, գնում են, թող գնան: —
Ասաց, դունչը ցած տարավ,
Գնաց, փոսում կանգ առավ,
Ձեռքը պարզեց իր երկար,
Խառնեց ցածում հող ու քար:
Հանեց տարավ նա մի բուռ,
Թափեց՝ եղավ մի բլուր...
Հա՛, ի՞նչ չամիչ, կորիզ, բան,
Գո՛րծ էր ուզում մեքենան:






ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

(Գիտա-ֆանտաստիկական պատմվածք)

1.

Մեր խոսակցությունը ընդհատվեց ազդակի զրնգոցից:

Երկնակամարում մի պահ միայն ցոլաց ու նորից չքացավ տիեզերական նավը, որի փռունգներից ժայթքող հրեղեն շիթերը մի ահռելի աղեղ գծելով տարածության մեջ, անմիջապես անհետացան:

— «Արագածն» է, — ասաց պրոֆեսոր Սամվելյանը — ժամանողների մեջ երևի ձեր խոսակցի գործակիցն էլ կլինի:

Մութ երկնքում ժպտում էր Սատուրնը, իր մեծությամբ զբաղեցնելով երկնակամարի գրեթե կեսը: Նա անընդհատ փոխում էր իր մարգարտյա մանյակը: Բազմաթիվ արբանյակների օղակը մերթ նսեմանում էր, մերթ՝ խամրում: Իսկ Միմասը խուսափուկ նավակի պես, շարունակ պտտվում էր տիրոջ շուրջը:

... Երկրագնդից ուղարկված արշավախումբը արդեն երկու տարի էր, ինչ բնակություն էր հաստատել Միմասի վրա: Երկու-երեք ամիսը մեկ՝ հարազատ մոլորակից Միմաս էին ուղարկվում գիտնականների նորանոր խմբեր, սննդամթերք և ուսումնասիրությունների համար անհրաժեշտ գործիքներ:

Ես Միմաս ժամանեցի վերջին տիեզերական նավով: Արդեն երկու ամիս էր, ինչ [illegible] արբանյակի վրա ստանձնել էի մեքենագետի պարտականությունները և միաժամանակ լրագրում էի:

Երկնային մարմնի վրա ոտք դնելու առաջին իսկ օրվանից, ես նկատեցի այն տարօրինակությունները, որոնք նշանավոր դարձրեցին Սատուրնի արբանյակին:

Երկրացիների կացարանը գտնվում էր մի փոքրիկ հարթավայրում, որը ամեն կողմից շրջապատված էր ժայռերով: Ինչ կար այդ ժայռերի մյուս կողմում, ո՛չ ոք չգիտեր: Դեռևս հնարավորություններ չկային աշխարհագրական ուսումնասիրություններ կատարելու համար:

Եթե չլինեին արտասովոր երկինքը, որտեղ միշտ իշխում էր Սատուրնը իր սքանչելի օղակով, որի վրա արևգակը իր փոքրությամբ, թույլ ու դեղնավուն լույսով համարյա չէր տարբերվում մյուս աստղերից, ապա ես դժվար թե հավատայի, որ գտնվում եմ Միմասի վրա: Մենք շրջում էինք առանց տիեզերական հագուստների, որովհետև արբանյակը ուներ կյանքի համար նպաստավոր պայմաններ: Ջերմաստիճանը բավարար էր, այնպես, որ անհրաժեշտ էր լինում հագնել միայն բաճկոն: Երեկոները սկսվում էր մեղմ քամին: Եվ, առհասարակ, թվում էր, թե ես արևից ոչ թե մեկ միլիարդ չորս հարյուր քառասուն միլիոն կիլոմետր հեռավորության վրա եմ գտնվում, այլ երկրի բարեխառն կլիմայական գոտու ամառանոցներից մեկում: Չէ՞ որ Սատուրնի ջերմությունը մինուս 153 աստիճան է: Իսկ ինչո՞ւ նրա ամենամոտիկ արբանյակը պետք է ունենա կյանքի համար այսպիսի սքանչելի պայմաններ:

Դրանից բացի, ես ուղղակի ապշեցի, երբ ժայ-

ների վրա տեսա կապտավուն տերևներով սաղարթախիտ ծառեր ու թփեր, որոնք չափազանց բազմազան էին։ Տերևների կապույտ գույն ունենալը չէր, որ զարմացրեց ինձ։ Պարզ բան է, որքան ցուրտ միջավայրում է աճում բուսականությունը, այնքան նա ձգտում է կլանել ավելի լույսի բաղադրության մեջ մտնող կապույտ ճառագայթները, որոնց ջերմությունն ավելի բարձր է։ Բայց բուսականությո՞ւնը... Մի՞թե դա անսպասելի չէր։ Միմասի վրա կենդանի բնություն։

2.

Պրոֆեսոր Սոսակյանը հեռացավ պատուհանից և նստեց կլոր սեղանի առաջ, որի վրա գտնվում էին օշարակով լցուն գավաթները։

— Հայկական է,— ժպտաց նա,— ձեր կենացը։

Նա նորից լցրեց գավաթները և շարունակեց ընդհատված խոսակցությունը։

— Երկրագնդի հետ համեմատած, այստեղ ջերմությունը ավելի ցածր է, բայց ոչ ցուրտ։ Տեսնո՞ւմ եք հորիզոնից բարձրացող ծխամպերը։ Ծուխը առաջանում է այրումից։ Իսկ ո՞վ է կատարում այդ այրումը։ Միայն ու միայն բնությունը։

— Հրաբուխնե՞րը...

— Անտարակույս... Իսկ հրաբուխների առկայությունը նշանակում է, որ Միմասի ընդերքում տեղի են ունենում բուռն քիմիական փոխազդեցություններ։ Անջատվում է ջերմություն։ Այդ պատճառով էլ այստեղ ջերմաստիճանը բարձր է։ Այո, Միմասը իր ընդերքում ունի մի հսկայական վառարան, որի հնոցապանը հենց ինքը բնությունն է...

Լսելով դռան բախոցը, պրոֆեսորը լռեց։

Ներս մտավ բարձրահասակ, դեմքի համարյա կեսը ծածկող ակնոցով մի անձնավորություն։ Նա հագել էր կարճ թևերով բաճկոն։ Նրա վրա ես անմիջապես նկատեցի Լրագրողների Միջազգային Ընկերության կրծքանշանը։ Նա գլուխ տվեց մեզ և առանց հրավերի սպասելու, նստեց ազատ բազկաթոռին ու լցուն գավաթներից մեկը պարպելով, ծանր շունչ քաշեց։

Ես տարակուսած նայեցի պրոֆեսորին։ Իսկ անծանոթն առանց շտապելու, հանեց գրպանի գրամեքենան ու բարեհամբույր ժպիտով ներկայացավ.

— Իտալացի լրագրող Մարչելլո Սալվատորե... Իսկ դուք երևի պրոֆեսոր Սոսակյանն եք։ Ես տեսել եմ ձեր լուսանկարը։

— Չեք սխալվում,— պատասխանեց պրոֆեսորը, պահարանից մի գավաթ ևս հանելով։

— Ես հետաքրքրությամբ կարդացի ձեր նյութագրությունների մասին,— ասաց Մարչելլո Սալվատորեն։— Չնայած որոշ բաներ ինձ համար մութ մնացին, բայց հեղինակը բավականին հաջող էր նկարագրել ձեր-աշխատանքները։

— Ահա և հեղինակը,— պրոֆեսորը ինձ ներկայացրեց իտալացի լրագրողին։— Դուք միասին կարող եք բավականին երկար ժամանակ անցկացնել Միմասի՛ վրա։

— Օ՜, ուրախ եմ, սինյոր,— Սալվատորեն վերցրեց գավաթը և առաջարկեց,— խմենք մեր ծանոթության կենացը։

...Իտալացին բավական լավ տպավորություն թողեց ինձ վրա։ Ես արդեն չէի նկատում նրա անքաղաքավարության հասնող ազատ վարվելաձևը։ Նա շատ սրամիտ ու կենսուրախ անձնավորություն էր։

— Եվ դուք համոզված եք, որ Միմասի վրա գոյություն ունեն բանական արարածնե՞ր,— կասկածանքով հարցրեց նա։

— Միմասի վրա բուսականություն կա,— հանգիստ պատասխանեց պրոֆեսորը,— նշանակում է, պետք է զարգացած լինի նաև կենդանական աշխարհը, քանի որ կյանքի այդ երկու ձևերը իրարից անկախ զարգանալ չեն կարող...

Պրոֆեսորը լռեց ու սկսեց ականջ դնել։

Դրսից լսվում էին էլեկտրական կիթառի մեղմ հնչյունները։ Իտալացու մատները, որոնք պրոֆեսորի խոսելու ժամանակ անընդհատ թռչկոտում էին գրամեքենայի ստեղների վրա, անշարժացան։ Թեթև զեփյուռն իր աներևույթ թևերի վրա մեզ հասցրեց մի թավշային ձայն։ Դա Նարինեն էր երգում։ Պրոֆեսորը բացեց պատուհանի փեղկերը։ Իմ մարմինը հուզմունքից փշաքաղվեց, չգիտեմ, Նարինեի ձայնը լսելո՞ւց էր դա, թե երգից, որի մեջ ես զգում էի հեռու, երկնահաս լեռների մեջ ծաղկող հայրենիքիս կարոտը։ Ինչ-որ թախիծ կար այդ երգի մեջ։ Անուշ մեղեդին հիշեցնում էր հարազատ տուներ, ընկերներին, բարեկամներին։ Մռայլ ժայռերը, տխուր, անհրապույր հարթավայրը ավելի էին ընդգծում թախիծը։ Իսկ երգը համարձակ սավառնում էր փոքրիկ հարթավայրի վրա։

Գարուն ա, ձուն ա արել,
Վա՜յ, լե՜, լե, վա՜յ, լե, լե, լե,
Վա՜յ, լե, լե՜, լե, լե...

3.

Երգն առանց ավարտելու, հանկարծ լռեց։ Պրոֆեսոր Սոսակյանը դժգոհությունից փնչացրեց։



— Չեմ հասկանում, ինչո՞ւ է նա երգը միշտ կիսատ թողնում։

Սալվատորեն, որ պակաս չէր հուզվել կիթառի հնչյուններից, հարցրեց.

— Օ՜, այստեղ երգչուհի՞ էլ ունեք...

— Դեռ վաղ է, որ մենք Միմասի վրա երգչուհիներ հրավիրենք... Սակայն, ինչպես տեսնում եք, մեր բժշկուհին նույնիսկ համերգներ կարող է տալ Միմասի բնիկների համար։

Մարչելլո Սալվատորեն անմիջապես տաքացավ.

— Պրոֆեսոր, դա անհավանական է։

Սոսկյանը ցույց տվեց հորիզոնում երևացող սարերից մեկը։

Նայեք այն կոնաձև սարին։ Նա կարծես ոչ թե սար է, այլ դազգահի վրա տաշած մի հսկայական հոլ։ Իսկ կողքի լեռնե՞րը... Նրանք իրենց տձևությամբ անմիջապես հիշեցնում են Ալպյան լեռները։

Լրագրողը չպատասխանեց։ Նրա փոխարեն կարծես խոսում էին ճկուն մատները, որոնք շարունակ պարում էին ստեղների վրա։

— Իսկ այս լուսանկարնե՞րը, որոնք ես նկարահանել եմ քարանձավներից մեկում,— շարունակեց պրոֆեսորը։— Եվ ի՞նչն է զարմանալին այս արձանագրությունների մեջ...

— Արձանագրությունների՞ մեջ...

— Այո, սրանք գրեր են։ Ինձ նույնիսկ հաջողվել է մեկնաբանել սրանց իմաստը։

— Պրոֆեսոր, դուք կատակո՞ւմ եք։

— Բոլորովին։ Կոնաձև սարը, իմ կարծիքով, արհեստական շինություն է, թերևս բնիկների ստորերկրյա քաղաքը։ Իսկ այս արձանագրությունները հաստատում են այդ։ Ափսոս, որ առայժմ մենք հնարավորություն չունենք աշխարհագրական հե-

տագնապություններ կատարելու։ Բանական արարածներ, այլ կերպ ասած՝ մարդիկ, Միմասում գոյություն ունեն։

— Իսկ ո՞ւր են այդ մարդիկ կամ թեկուզ՝ կենդանիները։

Ես զգացի, որ պրոֆեսոր Սոսակյանի և խալացի լրագրողի զրույցը աստիճանաբար վերածվում է վեճի։

— Մենք շատ քիչ ենք ծանոթ Միմասին,— զսպված տոնով պատասխանեց պրոֆեսորը,— բայց ինչո՞ւ չենթադրել, որ կրակ շնչող մեր տիեզերական նավերն ու հենց իրենքս ենք փախուստի մատնել կենդանական աշխարհի բոլոր ներկայացուցիչներին։

Մարչելլո Սալվատորեն զգալով, որ պրոֆեսորը արդեն բորբոքվում է, երևի որոշեց զրույցը առայժմ հետաձգել։ Նա ծալեց, գրպանը դրեց գրամեքենան և, ուղղելով ակնոցը, ժպտաց։

— Ներեցեք անհանգստության համար, պրոֆեսոր։ Ես այնքան անհամբերությամբ էի սպասում ձեզ հետ հանդիպելուն, որ տիեզերական նավից ուղիղ այստեղ եկա։ Հարկավոր է հանգստանալ։ Բայց և այնպես, չեմ կարողանում համաձայնվել ձեր տեսակետի հետ։ Ի՞նչ արած... Ամեն մարդ իր աչքերով է դիտում արտաքին աշխարհը։

Պրոֆեսոր Սոսակյանը ոչինչ չպատասխանեց։

4

Մարչելլո Սալվատորեն տեղավորվեց իմ սենյակում։ Մենք շատ շուտ մտերմացանք իրար հետ։ Ես բոլորովին դժգոհ չէի նրա ընկերակցությունից։ Սալվատորեն մի քիչ շատախոս ու անհանգիստ մարդ էր։ Առաջին իսկ օրը ես իմացա, որ նա ամուսնացած է Միլանի Լա Սկալա օպերային թատրոնի մեներգչուհի Գինա Գրեկոյի հետ, ունի երկու աղջիկ։ Միմասի վրա ընկել է գրեթե հրաշքով և, որ սիրած ըմպելիքն է սոդայաջրով վիսկին։

Նա երեկոները հաճույքով ականջ էր դնում մեր կայարանի հարավ-արևմտյան կողմից հասնող երգին։ Եվ երբ այն հանկարծ ընդհատվում էր, Սալվատորեն դժգոհությամբ օրորում էր գլուխը։ Երրորդ, թե չորրորդ օրը նա ինձ առաջարկեց այցելել «երգող սինյորինային»։ Ես ուրախությամբ համաձայնեցի, քանի որ ինքս էլ հաճույքով աշխատում էի ամեն առիթով լինել բժշկուհու մոտ։ Ճանապարհին համառոտակի պատմեցի, որ Նարինեն սովորում է բժշկական ինստիտուտում, ավարտելու է երեք տարի հետո, ստանալով միջմոլորակային տարմիղի բժշկուհու դիպլոմ։

— Ուրեմն նա Միմաս է եկել պրակտիկայի՞,— զարմացավ լրագրողը։

Ես գլխով հաստատական նշան արեցի ու սեղմեցի զանգի կոճակը։

— Մտե՛ք,— լսվեց ներսից։

Կիսամութ սենյակում, գրասեղանի առաջ նստած էր բժշկուհին։ Երբ մենք ներս մտանք, նա բարձրացրեց գլուխն ու հրավիրեց նստել։

Մարչելլո Սալվատորեն իտալական կենսախնդությամբ սկսեց իր հաճոյախոսությունները ու սրամիտ կատակները։ Հետո նրա խնդրանքով բժշկուհին վերցրեց էլեկտրական կիթառը ու իր թավշային ձայնով սկսեց երգել։

Լրագրողը հիացմունքով լսում էր բժշկուհուն։

... Երկնքում լողում էր Սատուրնը իր արբանյակներով։ Նրանք բոլորն էլ ունեին կիսալուսնի ձև։ Տարբեր մեծության ու պայծառության եղջյուրները ստեղծել էին մի հիասքանչ տեսարան

Երգ... Կիթառ... Գունատ լուսիններ...

Բայց հանկարծ, բոլորովին անսպասելի, Նարինեն լռեց։

— Ի՞նչ պատահեց, սինյորինա...

— Այդ դո՞ւք էիք ինձ ձայնակցում,— այլայլված հարցրեց Նարինեն։

— Ո՛չ

Բժշկուհին նորից սկսեց երգել, խնդրելով ուշադիր լսել։

Եվ, իսկապես, ինչ-որ անհայտ մարդիկ ձայնակցում էին նրան։ Նրանց ձայնը կարծես մեզ էր հասնում գետնի տակից։

Նարինեն նորից լռեց։

Անհայտները նույնպես լռեցին։ Նրանց ձայները աստիճանաբար մարեցին ու տիրեց խորհրդավոր լռություն։ Սակայն խաբուսիկ էր այդ լռությունը։ Մենք լարված սպասում էինք։ Թվում էր, թե այդ լռության մեջ ուր որ է կճայթի մի սարսափելի ամպրոպ, կամ տիեզերքը կփլվի մեզ վրա։

(Շարունակելի)




ԵՎԳԵՆԻ ՊԵՐՄՅԱԿ

ՆԿ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

Դա եղել է վաղուց, երբ ժամանակը տարիներով չափենք, և բոլորովին վերջերս, եթե դարերով հաշվենք:

Դա եղել է շքեղ մի թագավորության մեջ, եթե դատելու լինենք նրա մասին պալատականների թերթերի շքեղ ժանյակներով և պանթալոններով: Դա եղել է մի աղքատիկ երկրում, եթե գնահատենք նրան նորին մեծության հպատակների հագուստների ծակերով և ցուլհակների փոս ընկած այտերով:

Դա եղել է թագավորական հրապարակում, ուր սպասվում էր արտասովոր մի տեսարան: Երկնակապույտ ամպերից էլ վեր պետք է բարձրանար այդ թագավորության առաջին մեծ օդապարիկը:

Թագավորական հրապարակն էին շնորհ բերել ինքը՝ թագավորը և նրա արքունիքը: Թագավորական հրապարակն էին ժամանել ազնվատոհմ իշխանները, բարձրաստիճան մարդիկ և նախարարները: Թագավորական հրապարակն էին սլացել-եկել վաճառականները և խանութպանները, եկել էին վարպետները, ենթավարպետները, բանվորները:

Եվ ահա, ամեն ինչ պատրաստ է: Երջանիկ օդագնացը շուտով կնստի գնդին կապված զամբյուղը:

Ժողովուրդը ծափահարում է: Արքունիքը և շքախումբը ուրախ թափահարում են գլխարկները և հովհարները: Թագավորը ողորմածորեն ժպտում է իր արքայական ժպիտով, որն այնպես թանկ է գնահատվում ազնվականության կողմից:

Օդագնացի ծառաները և օգնականները արդեն մերկացրել էին դանակները, որպեսզի կտրեն օդապարիկը պահող օժանդակ կապերը, բայց այդ ժամանակ ինչ-որ մի երեխա, օդի մեջ փչելով, բաց թողեց սապնի ծիածանագույն մի պղպջակ, ապա երկրորդը, երրորդը և չորրորդը…

Ի՜նչ ծիծաղելի և անսպասելի էր դա: Որքա՜ն փոքրիկ ու աննշան թվացին սապնի պղպջակները, որ պայթում էին մեկը մյուսի ետևից, ընդհանուր ծիծաղի տակ:

Քրքջում էին բոլորը՝ թագավորը և թագուհին, նախարարները և երշիկագործները, խեղկատակները և փականագործները: Չէր ծիծաղում միայն օդագնացը:

— Իսկ ինչո՞ւ նորին մեծության և արքունիքի հետ միասին նա չի ծիծաղում,— գլխամաբ բարձրաձայն ասաց պառաված մի օրիորդ, մատնացույց անելով օդագնացին:

— Այո, նա ինչպե՞ս է համարձակվում չծիծաղել, երբ ծիծաղում է թագավորը,— բացագանչեց մի հաստլիկ բարձրաստիճանավոր:— Դու ինչո՞ւ չես ծիծաղում,— հարցրեց նա օդագնացին,— չէ՞ որ սապնի անհեթեթ պղպջակներն այնպես լավ են ընդգծում քո օդապարիկի կատարելությունը:

— Իսկապես,— հարցրեց թագավորը,— դու ինչո՞ւ չես ծիծաղում, երբ տեսնում ես, թե ինչպես են պայթում սապնի պղպջակները:

— Ձերդ մեծություն,— պատասխանեց օդագնացը խոնարհ գլուխ իջեցնելով, ոչ իսկ մազաչափ ավելի ցած, քան այդ թույլ էին տալիս վարվեցողության կանոնները:— Ես երբեք չեմ ծիծաղում այն բանի վրա, ինչ հարգանքի է արժանի:

Այդ մասին անհետաքրքիր չի լինի լսել։ Խոսիր,— հրամայեց թագավորը։— Ես ուզում եմ իմանալ, թե ինչի համար կարելի է հարգել սապնի պղպջակները... Հա՛, հա՛, հա՛...

Լսվեց արքունիքի և շքախմբի միահամուռ հաճոյական քրքիջը։ Եվ երբ ծիծաղը լռեց, օդագնացը սկսեց պատմել.

— Ես ճանաչում էի հեռավոր գյուղում ծնված մի տղայի։ Եվ, համառոտելով եմ ձեզ, նա շատ հարցասեր տղա էր։ Նա մտածում էր նույնիսկ, թե ինչու՞ ուժեղ քամին չի կարողանում ջարդել տարեկանի նուրբ ցողունը, և ինչու՞ բազեն, թևերը չթափահարելով, սավառնում է բարձր երկնքում, և որտեղի՞ց է այդպիսի ամրությունը նուրբ սարդոստայնին, որը բռնում է մեծ իշամեղվին, և ինչպե՞ս է շնչում ձուկը ջրում, առանց շնչառակլինելու։ Համառոտելով եմ ձեզ, դա մի հարցասեր, փոքրիկ տղա էր, թեև ես չեմ, որ պետք է նրա մասին այդպես լավ արտահայտվեմ։

Ազատ պահերին սիրով հայրը զբաղեցնում էր իր որդուն։ Նա նրա համար կառուցում էր հողմաղացներ, կպցնում էր թղթե օդապարուկներ և նրա հետ միասին բաց էր թողնում սապնի պղպջակներ։ Սապնի պղպջակները երբեմն բարձրանում էին բալկոնին վեր, որովհետև նրանք ուռել էին երազող հոր ջերմ կրծքի տաք օդից։

— Երազողի՞,— նորից հարցրեց թագավորը։— Նրա հայրը, որ փայտե մաշիկներ էր կրում, երազո՞ղ էր։

— Այո, ձերդ մեծություն։ Նա երազող էր։ Այդ ես գիտեմ։ Նա սովորեցնում էր որդուն՝ մտածել երկնքի թռչելու մասին։ Նա միշտ էր ներշնչում նրան այնպիսի պղպջակի մասին, որը կլինի ավելի մեծ, քան խոտի դեզը և կարող է բարձրացնել մարդուն։ Նա հավատում էր, որ իր որդին կիրականացնի հոր երազանքները։

— Եվ նա դրանք իրականացրե՞ց,— հարցրեց թագավորը։

— Այո, ձերդ մեծություն,— պատասխանեց օդագնացը,— այդ բանում կհամոզվեն բոլորը, հենց որ իմ գունդը ինձ բարձրացնի վեր։

Թագավորը, շքախումբը և արքունիքը լռեցին։

Շուտով օդապարիկը թռավ-բարձրացավ դեպի երկնային կապույտը և, հողմից տարվելով, կորավ հայացքից։ Իսկ գանգրահեր տղան, կարծես կրկնելով իր հոր մանկությունը, փչում էր նուրբ ծղոտը և մեկը մյուսի հետևից արձակում էր ծիածանագույն սապնի պղպջակներ։ Նրանք հազի՜վ-հազ բարձրանալով, պայթում էին մեկը մյուսի ետևից... Բայց...

Բայց դրա վրա այժմ ոչ ոք չէր ծիծաղում։

Թո՛ղ սապնի պղպջակներ անվանեն այն բոլորը, ինչը կատարյալ չէ և արագ պայթող, բայց աշխարհում ապրում են հարցասեր մարդիկ, որոնք սապնի պղպջակի միջոցով կարողանում են տեսնել օդագնացության ապագան, տարեկանի ցողունի միջոցով՝ խողովակաձև կառուցվածքների զարմանալի ամրությունը և նույնիսկ բորբոսի մեջ, որ ամենաչնչինն է բնության ստեղծագործություններից, գտնել կախարդական-բուժիչ պենիցիլինը։

Որոնեցե՛ք։






Այդ միջոցին Ջուլիետան կանգնել էր մի կողմ ու քթի տակ ինչ-որ երգ էր մռմռում: Մի աղջիկ հրեց նրան.

— Գոնե հիմա լռիր, չե՞ս ամաչում:

— Ինքներդ երգել չգիտեք, ինձ էլ նախանձում եք,—պատասխանեց նա:

Վ. ԵՐԿԱՆՅԱՆ

Մեծ դասամիջոց է: Միջանցքում աղմուկ է. երեխաներն այստեղ-այնտեղ են վազվզում, հրմշտում իրար, մի քանիսը նույնիսկ բարձրաձայն երգում են:

Հանկարծ երեք հարկերի միջանցքներում հնչեց ավագ ջոկատավար Ֆելիքս Գաբոյանի բոլորին ծանոթ ձայնը.

— Ուշադրությո՛ւն, ուշադրությո՛ւն,. խոսում է Լենինականի Վահան Տերյանի անվան միջնակարգ դպրոցի ռադիոհանգույցը:

Միջանցքներում աղմուկը լռեց: Բոլորը վազեցին դեպի ռադիո-բարձրախոսները և ականջները սրած՝ սկսեցին լսել:

— Հաղորդում ենք դպրոցական լուրեր,—շարունակեց ավագ ջոկատավարը.—Այսօր մենք կխոսենք միջանցքներում կարգ խանգարողների և ծույլ աշակերտների մասին: Ո՞ր դասարանում չկան այդպիսիները: Նրանք խանգարում են բոլորին, իրենք էլ վատ են սովորում: Օրինակ՝ Գրիգոր Պետիկյանը. ի՞նչ ասենք նրա մասին, ավելի լավ է կարդանք մի ոտանավոր, որը գրել է նրա ընկերներից մեկը.

Պետիկյանը մեր, ամեն օր ուրպես կարգ,
Ուշանում է, թափթփված է ու անկարգ.
Որ չի լինում, որ նա «երկուս» չստանա,
Օրագրում ոչ մի «երեք» դեռ չկա:

Ա՛յ, ձեր մեջ հիմա կանգնած է Ջուլիետա Խուրշուդյանը: Բոլորդ էլ ճանաչում եք նրան: Ո՞վ չի լսել նրա ձայնը, երբ նա երգելով ու աղմկելով վազվզում է միջանցքներում, անտեղի խոսքեր շպրտում աջ ու ձախ: Երգելն ու աշխուժությունը լավ բան են այն ժամանակ, երբ գործերդ էլ են լավ գնում: Իսկ Ջուլիետա՞ն: Տեսե՞լ եք նրան դասի ժամին. ձայնը չի լսվում, նույնիսկ երբ դաս են հարցնում՝ տեղից չի շարժվում, լռում է:

— Իսկ «երկուսնե՞րդ»:

Ջուլիետան կարծես ուշքի եկավ և նոր միայն նկատեց, որ բոլորն իրեն են նայում, նույնիսկ առաջին դասարանցիները: Նա այլևս ոչինչ չասաց, կարմրեց, գլուխը կախ գցեց ու վազելով մտավ դասարան:

Իսկ ռադիոն շարունակում էր խոսել: Եվ այդ ընթացքում մի քանի աշակերտներ էլ կաս-կարմիր կտրած, գլուխները կախ պոկվեցին խմբերից ու փախան տարբեր կողմեր: Իսկ Ֆրիդրիխ Բագրատունին, որը չնայած իր վաստակած «երկուսների» ծանր բեռին, միշտ սրախոսում ու ծիծաղեցնում էր իր նման ծույլիկներին, այժմ բոլորի կանչերի ու ծիծաղի տարափի տակ՝ փախավ առանց ետ նայելու:

Հետո ռադիոյի միջից լսվեցին պիոներական քայլերգի հնչյունները:

Զանգը տվեց...

Այսպես, աշակերտներն հաճախ էին լսում դպրոցական ռադիոհանգույցի հաղորդումները, որ ծաղրում էին ծույլերին ու անկարգապահներին:



Մի օր էլ ռադիոն հայտարարեց.

— Երեխանե՛ր, շուտով լույս կըտեսնի մեր երգիծական պատի թերթը: Անկարգների ու ծույլերի համար մի չարիք էլ է ավելանալու: Այդպիսիները թող զգուշանան՝ թերթը օգնության է գալիս մեր ռադիոյին:

Եվ ահա, մի քանի օր հետո դասամիջոցին երեխաները խմբվել էին նոր փակցված պատի թերթի առաջ: Նրա վերևի մասում գրված էր՝ «Տելևիզոր»:

— Նայե՜ք, նայե՜ք,—ծիծաղը հազիվ զսպելով գոչում էր հինգերորդ դասարանցի մի աղջիկ,—սա հո մեր Ռուդոլֆն է, որ իր ստացած «երկուներից» գլուխը կորցրել է և օրագրի «2»-ները ջնջել:

— Ապա Արտո՜ւշը, որ դասերին ճանճ բռնելով է զբաղված,—կանչում էր մի կարճլիկ տղա:

— Իսկ Ամալյա՜ն:

— Սիմո՜նը...



Նկարներից մեկում պատկերված է մի տղա՝ ծխախոտը ձեռքին: Դա բոլորին ծանոթ Ռոբերտ Զաքարյանն է: Ինքը՝ Ռոբերտը, որը մի փոքր հեռու կանգնած նայում էր իր նկարին, արմունկով հրեց կողքի ընկերոջը.

— Սրա՜նց տեսեք, նոր բան են հնարել:

Իսկ հաջորդ օրը, երբ բոլորը դպրոց եկան, տեսան, որ պատի թերթից պատռված է այն տեղը, ուր Ռոբերտի նկարն էր:

Կարծում եք դրանով ամեն ինչ վերջացա՞վ: Ո՛չ: Շուտով լույս տեսավ «Տելևիզորի» հաջորդ համարը: Եվ հենց ամենապատվավոր տեղում Ռոբերտը նորից իր պատկերը տեսավ:

Ահա մի ուրիշ նկար: Այստեղ պատկերված է Անատոլի Գրիգորյանի և Ռազմիկ Դավթյանի օրվա ռեժիմը: Կարծում եք նրանք մենա՞կ են: Իհարկե, ոչ: Թերթում նրանց կողքին տեղ են գրավել «երկուների չեմպիոն» Դոնարան, կովարար Ռաֆիկը և Վարուժանը, ծույլ Գեղամը, Հայկը, Ալբերտը:

Ահա և փնթի Համբարձումը: Նայեք նրա շորերին, ամեն ինչ պարզ կդառնա, էլ ավելացնելու բան չի մնա...:

Այսպես, մեկը մյուսի ետևից լույս են տեսնում «Տելևիզորի» համարները՝ ծաղրելով ու խարազանելով անկարգ, ծույլ ու թափթփված աշակերտներին:

Ռադիոն ու «Տելևիզորը» մեծ գործ են կատարել: Հիմա շատերն են ուղղվել: Զուլիետան էլի երգում է, բայց «երկուները» վերացրել է, իսկ Ֆրիդրիխն այժմ ինքն է ըզգուշացնում ուրիշներին.

— Տեսեք, հա՜, «Տելևիզոր» կընկնեք, ինձնից ձեզ խրատ:

Եվ նրանք հաշվի են առնում «փորձված» ընկերոջ խորհուրդը: Դե, ո՞վ կցանկանա, որ իրեն ճանաչեն երգիծական թերթի էջերից: Բայց թերթին արժանի «հերոսներ» էլի պատահում են:

«Ի՜նչ լավ բան են մտածել այդ դպրոցում»,—երևի կասեք դուք:

Այո՛, իհարկե, լավ բան է. ռադիոն դասամիջոցներին համերգներ է տալիս, լուրեր հաղորդում, երբեմն էլ հիշում է ծույլերին ու անկարգներին, թեև այդ պարտականությունը այժմ հիմնականում «Տելևիզորն» է կատարում:

Իսկ ձեզ մոտ, ձեր դպրոցում երեխաներ, ինչպե՞ս է, ունե՞ք արդյոք ռադիոհանգույց կամ երգիծական պատի թերթ: Եթե ունեք՝ շատ լավ, իսկ եթե չունեք... դե ուրեմն, դիմեցեք ձեր ջոկատավարներին, ուսուցիչներին, խնդրեցեք, որ նրանք օժանդակեն, ուղղություն ցույց տան: Իսկ նկարիչներ, սրամիտ թղթակիցներ, ակտիվիստներ միշտ էլ կճարվեն:

Դե՛, ուրեմն, գործի անցեք: Ոչինչ, որ ուսումնական տարին վերջանում է: Դուք այդ բանը կարող եք կազմակերպել և պիոներական ճամբարում, ինչ երբ նորից դպրոց գնաք, արդեն բավական փորձ կունենաք և գործն ավելի հեշտ կդառնա:

## ԱՆԲԱՆ ՄԱՐԴՆ ՈՒ ՍԱՏԱՆԱՆ

Գիտակցական ու եռանդուն աշխատանքով ապրող մարդկանց մեջ մի Անբան էր հայտնվել: Ոչ սովորել էր ուզում, ոչ աշխատել, իսկ փող շատ էր սիրում, ծլատ էր: Ոչ մի կերպ չէր ուզում հասկանալ, որ այն փողերն են միայն լավ, որոնք ազնիվ աշխատանքով են ձեռք բերվում:

Այդպես, մի օր քարշ էր գալիս Անբանն ու հոգոց հանում:

— Է՜հ, բախտ չունեմ էլի: Ոչ ոք ինձ մարդու տեղ չի դնում: Բոլորն ասում են՝ «Մեզ անբան մարդ հարկավոր չի: Ինքդ ոչինչ չես անում, մեզ էլ խանգարում ես: Զբվի՛ր գրողի ծոցը»: Ո՞ր սատանան ինձ կասի, թե ինչպես հարստանամ:

Հենց որ Անբանն այս խոսքերն ասաց, տեսավ սատանային իր դեմը կանգնած:

— Ի՞նչ կա որ.— ասաց սատանան,— եթե ուզում ես, ես քեզ կօգնեմ, թեթև աշխատանք է, ինքդ էլ կհարստանաս: Տեսնո՞ւմ ես գետակի վրայի կամուրջը:

Տեսնում եմ,— պատասխանեց մի քիչ վախեցած Անբանը:

— Լավ: Ուրեմն կանցնես կամուրջի մյուս կողմը և դու երկու անգամ շատ փող կունենաս, քան հիմա: Մի անգամ էլ կանցնես կամրջով և մոտիդ փողերը կկրկնապատկվեն: Եվ այսպես, ամեն անգամ հենց որ կամուրջն անցնես, քո մոտի գումարը կկրկնապատկվի:

— Իսկապե՞ս,— ուրախացավ Անբանը:

— Ճիշտ եմ ասում,— հավատացրեց սատանան,— բայց սպասիր, պայմանը: Քանի որ ես քեզ այդպիսի երջանկություն եմ տալիս, դու ամեն անգամ կամուրջն անցնելուց հետո ինձ պետք է տաս 24 կոպեկ՝ այս լավ խորհրդի համար:

— Դե, ինչ կա որ,— համաձայնեց Անբանը,— քանի որ փողերս կրկնապատկվելու են, կարելի է ամեն անգամ քեզ 24 կոպեկ տալ: Սկսենք, ի՞նչ է:

Անբանը մի անգամ անցավ կամրջով, հաշվեց փողերը... Ա՜յ քեզ հրաշք: Իսկապես, որ սատանան ճիշտ էր ասել: Նա 24 կոպեկ գցեց սատանային ու շտապեց երկրորդ անգամ անցնել կամրջով: Նրա մոտի փողերը նորից կրկնապատկվեցին: 24 կոպեկ էլի տվեց սատանային ու երրորդ անգամ անցավ: Փողերը կրկնապատկվեցին: Բայց գումարը հավասարվեց ուղիղ 24 կոպեկի, որն ըստ պայմանի նա ստիպված սատանային տվեց: Սատանան քրքջաց ու չքվեց:



Այսպես էլ Անբանը մնաց առանց փողի: Ինչպես երևում է, ուրիշի խորհրդի հետ պետք է և սեփական խելք ունենալ:

Իսկ որքա՞ն փող կար Անբանի մոտ սկզբում:

## ԿՐՈՍՎՈՐԴ



Հորիզոնական—3. Սովետական շախմատիստ, 6. չիլիական գրող, խաղաղության գործիչ, 7. գերմանական պրոգրեսիվ կին գրող, 10. քաղաք, որտեղ տեղի է ունեցել երիտասարդության համաշխարհային առաջին ֆեստիվալը, 11. հայկական ժողովրդական պար, 13. ադրբեջանական մեծ բանաստեղծ, 15. քաղաք, որտեղ տեղի կունենա երիտասարդության համաշխարհային վեցերորդ ֆեստիվալը, 19. քաղաք Ռումինիայում, 20. լատվիական սովետական գրող:

Ուղղահայաց—1. հերոս կոմերիտուհի, 2. նավահանգիստ Եգիպտոսում, 4. հայկական լեռ, 5. Գ. Սևունցի վեպը, 8. պետություն Կենտրոնական Ամերիկայում, 9. հերոս երիտասարդ գվարդիական, 10. սովետական մանկական ամսագիր, 12. ՍՍՌՄ և Եվրոպայի ռեկորդսմեն՝ 400 մետր վազքի գծով, 14. սովետահայ գրող, 16. գույն, 17. 16-րդ օլիմպիական խաղերի չեմպիոն, թեթևատլետ, 18. ՍՍՌՄ ամենաերիտասարդ գրոսմայստեր:



Կազմեց Մ. ՔՈՉԱՐՅԱՆ

## Ո՞ՒՄ ԱԶԳԱՆՈՒՆՆ Է




Եթե շրջագծի շառավղի ուղղությամբ դեպի կենտրոն գրեք հարցերի ճիշտ պատասխանները, ապա չորրորդ շրջանում կկարդաք ռուս նշանավոր կոմպոզիտորներից մեկի ազգանունը:

1. Տղամարդու բարձր ձայն, 2. իտալական մեծ կոմպոզիտոր, 3. «Խանդութ» բալետի հերոսներից, 4. մոլդավական պետական երգչախմբի անունը, 5. մեքսիկական ծագում ունեցող պարահանդեսային պար, 6. երաժշտական լարային գործիք, 7. երաժշտական ստեղծագործության ձև:

Առաջարկ՝ Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆԻ



## ՈՒՂՂԵՑԵՔ ՍԽԱԼԸ

Լուցկու 12 հատերի օգնությամբ կազմեք հավասարում, ինչպես ցույց է տրված նկարում: Ինչպես տեսնում եք, այդ հավասարումը սխալ է՝ 6—4=9: Լուցկու մեկ հատի տեղափոխումով ճշտեք հավասարումը:

## ՌԵԲՈՒՍ

*Այստեղ գրված է ուժ ծոչունի անունը:*
*Կարո՞ղ եք կարդալ:*

Առաջարկ՝ Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ




## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

*«Պիոներ» № 4*

**Խաչբառ** — Ուղղահայաց—1. Կավերին, 2. Ռոսսի, 3. Գորկի, 4. Կոմարով, 7. «Կովկաս», 9. Կիպրենսկի, 10. Լոմոնոսով, 12. Սուվորով, 13. Զախարով, 18. «Թեհրան», 19. Գալիլեյ, 21. Լոզիգին, 24. Պերով, 25. Ռեպին:

Հորիզոնական—5. Նախիմով, 6. Տոլստոյ, 8. Օստրովսկի, 11. Միչին, 14. Պոպով, 15. Մուրացան, 16. Պետրով, 17. Զարենց, 20. Հոմերոս, 22. Դանկո, 23. Գոգոլ, 26. Սերվանտես, 27. Սեչենով, 28. Միչուրին:

**Օգնեք փորձեք**—1-քայլ՝ 2 րդ և 3-րդ քարերը տանել 10-րդից աջ, 2 քայլ՝ 8-ը և 9-ը տանել 2-ի և 3-ի տեղը, 3 քայլ՝ 5-ը և 6-ը տանել 8-ի և 9-ի տեղը, 4-քայլ՝ 10-ը և նրանից աջ եղած մի քարը տանել 5-ի և 6 ի տեղը, 5 քայլ՝ 1-ի և 2-ի տեղը եղած քարերը տանել 4-քայլից ազատված տեղերը:

**Կարո՞ղ եք**—

| | | | |
|---|---|---|---|
| | | 4 | 9 |
| | | 5 | 12 |
| 14 | 9 | 11 | 6 |
| 3 | 8 | 10 | 9 |

**Օգնեցեք Գագիկին**—Բանալու հետևի մասի վրա եղած ուղղանկյան անցքը դնելով գրերի վրա կարդում ենք. «Չկա ավելի կարող ուժ, քան գիտությունը, գիտությամբ զինված մարդն անպարտելի է». Գորկի:



### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Համարը ձևավորել է նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԸ




„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Красноармейская № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց № 41. Հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 06273, Պատվեր 428, Տիրաժ 5000: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 10/V 1957 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Տերյան 91:*

*Գինը 2 ռ.*

## ԳՆԱՑՔՈՒՄ

Անա գնացքն է թռչում,
Դեպի հեռուն են փախչում
Կայարանը միգապատ,
Եվ ամպերը անարատ,
Դաշտերը մեր ոսկեծիլ,
Այգիները մեր անծիր,
Կածան, անտառ ու ճամփորդ,
Գյուղեր, հյուղեր արևոտ,
Կարծես ձեռքով են անում,
Հե՜յ, ճամփա են մաղթում,
Բարի ճամփա են մաղթում
Ճամփա են մաղթում:



